

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12**

ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ








# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ, ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ, ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում գոհունակությամբ ընդունվեց այն հաղորդումը, որ Հայկական ՍՍՀ-ի ագրոարդյունաբերական համալիրի աշխատավորական կոլեկտիվները կատարել են պետության հացահատիկի, բանջարեղենի, խաղողի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի ու պտղի վաճառքի պլանները ու սոցիալիստական պարտավորությունները: Այդ հաջողությունը կուսակցության ագրարային քաղաքականության կենսագործման ուղղությամբ հանրապետությունում տարվող աշխատանքի արդյունքն է:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հանրապետության կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին, մեխանիզատորներին, գյուղատնտեսության և ջրային տնտեսության մասնագետներին, մթերման, տրանսպորտային և վերամշակման ձեռնարկությունների աշխատողներին, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմիններին ի սրտե շնորհավորում է աշխատանքային մեծ հաղթանակի առթիվ և վստահություն հայտնում, որ Հայկական ՍՍՀ-ի աշխատավորները այսուհետև ևս հաստատակամորեն կաշխատեն երկրի պարենային ծրագրի կատարման համար, աշխատանքային բարձր արդյունքներով կնշանավորեն կուսակցության առաջիկա XXVII համագումարը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հերթական նիստում, որին մասնակցում էին միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների առաջին քարտուղարները, քննարկեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1985 թվականի պետական պլանի և պետական բյուջեի նախագծերը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ա. Տիխոնովը:

Ն. Ա. Տիխոնովի զեկուցման մեջ և քննարկման ընթացքում նշվեց, որ տասնմեկերորդ հնգամյակի եզրափակիչ տարվա պլանի նախագիծը նպատակամղված է էկոնոմիկայի մեջ վերջին ժամանակներս առաջացած դրական միտումների ամրապնդմանն ու զարգացմանը: Նրանում սահմանված են համատնտեսական ցուցանիշների գծով ժողովրդական տնտեսության աճի ավելի արագ տեմպեր, քան հնգամյակի նախընթաց տարիների միջին տեմպերն են: Պլանը կողմնորոշված է արտադրության ինտենսիվացման ուժեղացմանը և նրա տեխնիկական մակարդակի բարձրացմանը, արտադրանքի որակի ըստ ամենայնի բարելավմանը, ռեզերվների առավել լրիվ օգտագործմանը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատանքում ավելի մեծ ներդաշնակության հասնելուն:

Նախատեսվում են բնակչության նյութական ու կուլտուրական կենսամակարդակի հետագա աճ, բնակարանային ու սոցիալ-կենցաղային շինարարության հետևողական զարգացում: Սրա հետ մեկտեղ նշվեց թերությունների և նեղ տեղերի առկայությունը ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի, միավորումների ու ձեռնարկությունների աշխատանքներում, ուշադրություն հրավիրվեց դրանք շուտափույթ կերպով վերացնելու անհրաժեշտության վրա:

Նիստում մեծ ճառով հանդես եկավ ընկեր Կ. Ու. Չեռնենկոն: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն լիովին հավանություն տվեց նրա ելույթի բովանդակած ցուցումներին ու հետևություններին և անհրաժեշտ համարեց դրանք դնել բոլոր կուսակցական, պետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների ու աշխատավորական կոլեկտիվների գործունեության հիմքում: Ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառը տպագրվում է մամուլում:

Խնդիր առաջադրվեց մասսայական շարժում ծավալել տնտեսությունը արտադրական պրոցեսի բոլոր օղակներում՝ վերևից մինչև ներքև ռացիոնալ կերպով վարելու համար: Ընդսմին պետք է հատուկ ուշադրություն նվիրվի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների տնտեսմանը, թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն արմատավորմանը, տնտեսական մեխանիզմի կատարելագործման նպատակալաց սիստեմատիկ աշխատանքի շարունակմանը:

Կենտկոմի քաղբյուրոն պաշտպանեց տնտեսությունը ռացիոնալ կերպով վարելու հաշվին ձեռնարկությունների, մարզերի, երկրամասերի ու հանրապետությունների արտապլանային խնայողության ֆոնդերի ստեղծման՝ երկրի առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությունը, որոնք կհատկացվեն աշխատավորական կոլեկտիվների սոցիալական կարիքների բավարարմանը և առաջին հերթին բնակչության բժշկական սպասարկման բարելավմանը: Այդ ֆոնդերի ձևավորման և օգտագործման կարգը կսահմանվի ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի կողմից:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, երկրամասերի, մարզերի, օկրուգների, քաղաքների ու շրջանների կուսակցական կոմիտեներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական մարմիններին առաջարկված է ապահովել 1985 թվականի պլանի առաջադրանքների կատարման ու գերակատարման, տասնմեկերորդ հնգամյակի հաջող ավարտման կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանքի անցկացումը:

Պետական պլանի ու պետական բյուջեի նախագծերի հետ առնչված հարցերի քննարկմանը մասնակցեցին ընկերներ Հ. Ա. Ալիևը, Վ. Վ. Գրիշինը, Ա. Ա. Գրոմիկոն, Դ. Ա. Կունաևը, Վ. Վ. Շչերբիցկին, Գ. Վ. Ռոմանովը, Մ. Ս. Սոլոմենցևը, Վ. Վ. Կուզնեցովը, Է. Ա. Շևարդնաձեն, Բ. Ն. Պոնոմարյովը, Մ. Վ. Զիմյանինը, Ե. Կ. Լիգաչովը, Ի. Վ. Կապիտոնովը, Ն. Ի. Ռիժկովը, Կ. Վ. Ռուսակովը:

Հաշվի առնելով տեղի ունեցած քննարկումը, քաղբյուրոն հիմնականում հավանություն տվեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1985 թվականի պետական պլանի և պետական բյուջեի նախագծերին: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարական տրվեց հիշյալ նախագծերը ներկայացնել ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն դիմեց երկրի կոմունիստներին և բոլոր աշխատավորներին, կոչ անելով ակտիվորեն սոցիալիստական մրցության մեջ մտնել պետական պլանի առաջադրանքների կատարման համար, աշխատանքային բարձր նվաճումներով դիմավորել մեր լենինյան կուսակցության XXVII համագումարը:

---

# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԱՎԱՐՏԵԼ ՀՆԳԱՄՅԱԿԸ, ԱՐԱԳԱՑՆԵԼ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ

## ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՐՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

*Ընկերնե՛ր, այսօր ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի նիստում մենք քննար-
կում ենք 1985 թվականի պլանի և բյուջեի նախագծերը։ Եկող տարին շատ
տեսակետներից բացառիկ է։ Դա ՍՄԿԿ XXVII համագումարին ակտիվորեն նա-
խապատրաստվելու տարին է, Հայրենական մեծ պատերազմում սովետական
ժողովրդի հաղթանակի 40-ամյակի տարին։ Այս ամենը, անտարակույս,
առանձնահատուկ քաղաքական իմաստ է հաղորդում այն մեծ աշխատանքին,
որ մեզ սպասում է նոր տարում։ Այդ աշխատանքը պետք է ընթանա բոլոր
ուժերը ընթացիկ հնգամյակի հաջող ավարտմանը և 12-րդ հնգամյակի հա-
մար լավ, կայուն բազայի ստեղծմանը մոբիլիզացնելու նշանաբանով։*

*Հասկանալի է, որ 1985 թվականի պլանի և բյուջեի նախագծերի նախա-
պատրաստումը քիչ ջանքեր չի պահանջել։ Դրանց նախապատրաստմանը ակ-
տիվորեն մասնակցել են բոլոր ճյուղերի աշխատավորական կոլեկտիվները,
տեղական կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները, մինիս-
տրություններն ու գերատեսչությունները և, իհարկե, պետպլանը և ֆինանս-
ների մինիստրությունը։ Նախագծերը մանրամասնորեն մշակվել են ՍՍՀՄ Մի-
նիստրների խորհրդում, քաղբյուրոյի՝ ժողովրդական տնտեսության կառավար-
ման կատարելագործման և արդյունավետության բարձրացման հանձնաժո-
ղովում։*

*Այժմ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն պետք է քննարկի այդ փաստաթղթերը
և, որ առանձնապես կարևոր է, կոնկրետացնի եկող տարվա տնտեսական ու
սոցիալական խնդիրների լուծման ուղիները։*

*Պլանի ու բյուջեի նախագծերը կազմելիս, անշուշտ, հարկ է եղել հաշվի
առնել ինչպես մեր նվաճումները, այնպես էլ թերացումները։ 1981—1982 թվա-
կաններին, ինչպես հայտնի է, մի շարք պատճառների բերումով ժողովրդական
տնտեսության զարգացման տեմպերը նախատեսվածից մի փոքր դանդաղ
եղան։ Իրատեսորեն գնահատելով իրավիճակը, կուսակցությունը մշակեց բա-
ցասական միտումների հաղթահարման, տնտեսական աճի արագացման գոր-
ծուն միջոցառումներ։ Այսօր կարելի է գոհունակությամբ նշել՝ երկրի էկոնո-
միկան զարգանում է ավելի դինամիկորեն։* Վերջին երկու տարիները դրական
տեղաշարժերով նշանավորվեցին ժողովրդական տնտեսության փաստորեն բո-
լոր ճյուղերի աշխատանքում։

*Վերցնենք, օրինակ, արդյունաբերությունը։ 1983—1984 թվականներին
նրա արտադրանքի տարեկան միջին աճը կհասնի 32 միլիարդ ռուբլու, որը
մեկուկես անգամ շատ է հնգամյակի առաջին երկու տարիների համեմատու-
թյամբ։ Հուսադրող փոփոխություններ են տեղի ունենում նաև գյուղատնտե-
սության մեջ։ Դրանց մասին մանրամասնորեն խոսվեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկ-
տեմբերյան պլենումում։ Մենք բոլորս լավ ենք հիշում, թե ինչքան բարդու-*



*թյուններ էր ստեղծում երկաթուղային տրանսպորտը։ Ներկայումս նրա աշխա-
տանքը բարելավվում է, և կարելի է հուսալ, որ այդ բնագավառում գործերն
այսուհետև էլ հաջող կընթանան։ Ակնառու իրադարձություն եղավ Բայկալ—
Ամուր մայրուղու՝ այդ հիրավի համաժողովրդական կառույցի, ամբողջ ուղե-
գծում աշխատանքային երթևեկության վաղաժամկետ բացումը։*

*Եվ ամենակարևորն այն է, ընկերներ, որ տեղի ունեցած փոփոխություն-
ները նպաստավոր են անդրադարձել սովետական մարդկանց կենսամակար-
դակի վրա, արագացրել բնակչության ռեալ եկամուտների աճը։ Իսկ դա կու-
սակցության տնտեսական քաղաքականության, մշակված գծի ճշգրտության
գլխավոր չափանիշն է։ Ուրախալի է նաև այն, որ այս բոլոր նվաճումները
խարսխվում են ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրաց-
ման, որակական ցուցանիշների բարելավման վրա։*

*Իսկ ի՞նչն է մեզ հնարավորություն տվել հասնելու այդպիսի արդյունքների։*

*Կարծում եմ, որ դա առաջին հերթին տնտեսական շինարարության ղե-
կավարման ուղղությամբ կենտրոնում և տեղերում կուսակցական կազմակեր-
պությունների, սովետական և պետական մարմինների ավելի նպատակասլաց,
առարկայական աշխատանքն է։*

*Այնուհետև, հարկ է նշել այն եռանդագին միջոցները, որ ձեռնարկվել են
տնտեսական զարգացման վճռական ուղղություններում թերացումները հաղ-
թահարելու, պատկերավոր ասած՝ նեղ տեղերը «լայնացնելու» համար։*

*Ուժեղացել է պահանջկոտությունը բոլոր աստիճանների կադրերի նկատ-
մամբ, բարձրացվել է նրանց պատասխանատվությունը ճյուղում, ռեգիոնում,
ձեռնարկություններում տիրող իրավիճակի համար և, իհարկե, իրենց զգալ
են տվել աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդման,
կազմակերպվածության, կարգուկանոնի հաստատման միջոցառումները։*

*Պարզ է, ընկերներ, որ մեր ջանքերը ներգործուն եղան համաժողովրդա-
կան աջակցության, այն խանդավառության շնորհիվ, որով աշխատավորներն
ընդունեցին կուսակցության մշակած միջոցառումները և ակտիվորեն պայքա-
րեցին դրանց կենսագործման համար։ Դրա վառ վկայությունն է ամենուրեք
աշխատավորական կոլեկտիվների գործարար արձագանքը ՍՄԿԿ Կենտրոնա-
կան կոմիտեի կոչին՝ հասնել աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս
արտապլանային բարձրացման և ինքնարժեքի կես տոկոս լրացուցիչ իջեցման։
Ուղղակի ասենք, որ այդ առաջադրանքները հեշտ չէին, բայց ձեռնարկություն-
ների գերակշիռ մեծամասնությունը հաջողությամբ է կատարում ստանձնած
բարձր պարտավորությունները։*

*Կարծում եմ, որ առավել աչքի ընկած աշխատավորական կոլեկտիվները,
բանվորները, կոլտնտեսականները, մտավորականության ներկայացուցիչները՝
բոլոր նրանք, ովքեր իրենց անձնվեր աշխատանքով այդ ծանրակշիռ ավանդն
են մուծել մեր հայրենիքի հզորության ամրապնդման գործում, արժանի են
ամենասրտագին շնորհակալության։*

*Սակայն ձեռք բերվածով բավարարվել չի կարելի։ Վերջին ժամանակներս
ես մի շարք հանդիպումներ եմ ունեցել միութենական հանրապետությունների
կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների
քարտուղարների հետ։ Ընկերները պատմում էին պլանների կատարման ըն-
թացքի, նվաճումների մասին։ Միևնույն ժամանակ նշվում էր, որ որոշ տեղե-
րում նկատվում են բարեհոգության, ինքնահանգստացման տրամադրություն-
ներ, աշխատանքում լարվածությունը նվազեցնելու ձգտում։ Այդպիսի տրա-
մադրությունները տեղ չպետք է ունենան։ Դուք գիտեք, որ շատ ձեռնարկու-
թյուններ և նույնիսկ որոշ ճյուղեր չեն կարողացել հասնել արտադրության
կայուն աճ երաշխավորող արդյունքների, բնավ էլ ոչ բոլոր բնագավառներում է
հաջողվել հաղթահարել թերացումները։ Դա առանձնապես վերաբերում է ար-
տադրանքի անվանացանկի գծով պլանի կատարմանը։ Մինչև հիմա չի ապա-
հովվում արտադրական կարողությունների ժամանակին գործարկումը։*

*Մի խոսքով, ընկերներ, քիչ անելիքներ չկան։ Ուստի, կցանկանայի ամե-
նայն որոշակիությամբ նշել. նրանք, ովքեր դեռ ետ են մնում, պետք է առանց*

սավոր կերպով։ Այլ կերպ ասած, ռացիոնալ կերպով վարել տնտեսությունը։ Ընթացիկ մոմենտի յուրահատկությունն այն է, որ ամբողջ աշխատանքը հասցվի որակապես ավելի բարձր աստիճանի, որ ռացիոնալացումը ընդգրկի արտադրական պրոցեսի բոլոր օղակները։

Հարկավոր է հոգ տանել մասսաների ստեղծագործական ակտիվության զարգացման համար անհրաժեշտ տնտեսական ու կազմակերպական պայմանների ստեղծման մասին։ Այդ խնդրի գործնական իրականացման մեջ իրենց ուժերի ու գիտելիքների գործադրման ասպարեզ կգտնեն բանվորը և կոլտնտեսականը, ինժեները և տնտեսագետը, գիտնականը և տնտեսական ղեկավարը։

Կկամենայի հիշեցնել Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «տնտեսական վերելքի պայման է... աշխատավորության կարգապահության, աշխատանքի հմտության, ձեռներեցության ու լարվածության, աշխատանքի ինտենսիվության, նրա լավագույն կազմակերպման բարձրացումը» (ԵԼԺ, հ. 36, էջ 231)։ Մենք, ասում էր Վ. Ի. Լենինը, դիմելով աշխատավորներին, պետք է ամեն ինչ հաշվարկենք, և յուրաքանչյուրը պետք է սովորի հաշվենկատ լինել։

Հենց այսպես և միայն այսպես պետք է կազմակերպվի բոլոր աշխատավորական կոլեկտիվների, բոլոր ձեռնարկությունների և ճյուղերի աշխատանքը։

Գործունեության լայն ասպարեզ է նյութական ռեսուրսների խնայողությունը։ Լինել տնտեսատեր, պայքարել առավել մեծ խնայողության հասնելու համար՝ ահա առաջնահերթ խնդիրը։ Ուզում եմ ասել, որ խնայողության նկատմամբ մոտեցումը այժմ պետք է սկզբունքորեն այլ լինի։ Իսկ ինչպե՞ս էր առաջ։ Խնայողությունը դիտում էին որպես հարաճուն և, թվում է, թե անսպառ ռեսուրսների ինչ-որ հավելում։ Հիմա իրավիճակը էականորեն փոխվել է, և մենք արդեն չպիտի հույս դնենք ռեսուրսների անընդհատ ավելացման վրա։ Մեր օրերում հենց խնայողությունն է դառնում արտադրության աճի ապահովման կարևորագույն աղբյուրը։

1985 թվականին վառելիքաէներգետիկ ռեսուրսների և սև մետաղների գլանվածքի հարցում ժողովրդական տնտեսության լրացուցիչ պահանջմունքը համարյա 60 տոկոսով պետք է ապահովվի դրանց խնայողության հաշվին։ Լարված առաջադրանքներ են սահմանված նաև հումքի և նյութերի մյուս տեսակների տնտեսման ասպարեզում։ Այստեղից միանգամայն պարզ է, որ պլանային առաջադրանքները կատարել կարելի կլինի միայն ծախսման նախատեսված նորմաների խստիվ կիրառման դեպքում։ Ահա թե ինչու մինիստրությունները, արտադրական կոլեկտիվները պետք է դասեր քաղեն նախորդ տարիների վրիպումներից, երբ նյութական ծախսումների պակասեցման առաջադրանքները հաճախ ձախողվում էին։ Յուրաքանչյուր ձեռնարկությունում պետք է մշակվի խնայողության կոնկրետ գործողությունների հատուկ պլան և սահմանվի այդ պլանի կատարման խիստ վերահսկողություն։

Իհարկե, խնայողության համար պայքարը պետք է ընդգրկի ոչ միայն արտադրությունը, այլև մեր կյանքի մյուս ոլորտները, այդ թվում նաև կենցաղը։ Չէ որ վառելիքի և էլեկտրաէներգիայի մեկ հինգերորդ մասը գնում է կենցաղային կարիքների համար և դրանք հարկավոր է օգտագործել ավելի խնամքով։

Ընկերները գիտեն Մոսկվայի, Ուկրաինայի, Ուրալի լավագույն կոլեկտիվների նախաձեռնության մասին, որով նախատեսվում է յուրաքանչյուր ձեռնարկությունում, մարզում, երկրամասում, հանրապետությունում ստեղծել արտապլանային խնայողության ֆոնդ։ Կարծում եմ, որ դա օգտակար նախաձեռնություն է, համապատասխանում է ժամանակի ոգուն և այն հարկավոր է պաշտպանել։ Իսկ ինչու, ասենք, գործին այնպես չմոտենալ, որ յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ առաջավոր ձեռնարկությունների օրինակով իր առջև խնդիր դնի. տարեկան երկու օր աշխատել տնտեսված նյութերով, հումքով ու վառելիքով։

Դա, ի դեպ, կդրդեր տեղերում կոնկրետ և եռանդագին կերպով ուղիներ որոնել արտադրանքի ինքնարժեքի իջեցման, տարբեր կարգի վերնորմատիվա-



յին պաշարների, անարտադրողական ծախսերի կրճատման համար։ Բրիգադներում և աշխատատեղերում այդ գործը կամրապնդվեր խնայողության անձնական հաշիվներ մտցնելով։ Եվ, իհարկե, այս բոլոր հարցերը պետք է արտացոլում գտնեն աշխատավորական կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունների մեջ։

Հավանության է արժանի ընկեր Վ. Վ. Շչերբիցկու և մյուս ընկերների առաջարկությունը՝ այդ ֆոնդի միջոցները հատկացնել սոցիալական կարիքներին և, առաջին հերթին, բնակչության բուժսպասարկման բարելավմանը։

Առանձնակի ուշադրություն է հարկավոր նվիրել աշխատանքի ռացիոնալ օգտագործմանը, նրա արտադրողականության բարձրացմանը։ Հարկավոր է խորապես վերլուծել, թե ինչպես են տեղաբաշխված բանվորները, որքան արդյունավետ են նրանց աշխատանքի եղանակները, ինչպես է օգտագործվում աշխատաժամանակի յուրաքանչյուր ժամը։ Դրան, օրինակ, լավ է համապատասխանում աշխատատեղերի ատեստավորում անցկացնելու մի շարք աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունը։ Շատ կարևոր է, որ դրան անմիջական մասնակցություն են ցուցաբերում իրենք՝ բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները։

Աշխատատեղերի ատեստավորումը օրգանապես ներառնում է նաև արտադրական կարողությունների, մեքենաների ու սարքավորումների ավելի լրիվ օգտագործման համար մղվող պայքարը։ Նախընթաց տարիներին կուտակվել է հսկայական պոտենցիալ, որը մարմնավորում է միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքը։ Եվ այսուհետև չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ աշխատանքային օրվա ընթացքում մեքենաշինության մեջ բոլոր սարքավորումների 14 տոկոսը չի աշխատում, որ յուրաքանչյուր երրորդ բեռնատար ավտոմոբիլը ուղերթի չի մեկնում։ Դա անթույլատրելի անտնտեսվարություն է, հանրային աշխատանքի վատնում։ Եվ յուրաքանչյուր ձեռնարկությունում հարկավոր է առարկայորեն պարզել իրավիճակը, հասնել առկա կարողությունների ավելի լավ օգտագործման։

Ինչպես գիտեք, կուսակցության Կենտրոնական կոմիտեն վերջերս հավանություն տվեց աշխատատեղերի ատեստավորում անցկացնելու և դրանք ռացիոնալացնելու Դնեպրոպետրովսկի կոմբայնի գործարանի փորձին։ Հարկավոր է, որ մինիստրությունները, տեղական կուսակցական, սովետական և արհմիութենական մարմինները ամենուրեք ապահովեն այդ կարևոր նախաձեռնության տարածումը։

Հաջորդ հարցը։ Ռացիոնալ տնտեսավարել, նշանակում է մշտապես բարելավել արտադրանքի որակը։ Բոլորի համար հասկանալի է, որ որակի համար մղվող պայքարն անբաժանելի է յուրաքանչյուր աշխատավորի կողմից իրեն հանձնարարված գործի բարեխիղճ կատարումից։

1985 թվականի պլանը որակի բարձրացման կարևոր առաջադրանքներ է նախատեսում։ Բայց դրանք հարկավոր է համարել նվազագույնն այն բանի, ինչ պետք է արվի։

Անկեղծ լինենք. թե՛ արդյունաբերության մեջ, թե՛ մյուս ճյուղերում արտադրանքի որակի վիճակը առայժմ բարվոք չէ։ Դժգոհություններ է հարուցում մետաղաարտադրանքի առանձին տեսակների որակը, ցածր է որոշ մեքենաների ու մեխանիզմների հուսալիությունը, քիմիագործները թողարկում են փայլատ, անկայուն ներկեր։ Գործերը նաև լավ չեն շինարարության մեջ։ Բանվորի պես, խղճով են վարվել տնաշինական կոմբինատների բրիգադավարները՝ այն նամակի հեղինակները, որը հասցեագրված է երկրի բոլոր շինարարներին։ Նրանք, ինչպես բոլորը լավ հիշում են, կոչ են արել վճռականորեն բարելավել շահագործման հանձնվող բնակարանների որակը։ Պատահական չէ, որ այդ նամակը այնպիսի լայն արձագանք գտավ, իսկ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ի պաշտպանություն դրա հատուկ որոշում ընդունեց։

Ճյուղային մինիստրությունները, կենտրոնական տնտեսական գերատեսչությունները պետք է հուսալի հիմքի վրա դնեն որակի բարելավման աշխա-

տանքը։ Ոչ մի հնարավորություն տեսադաշտից չպետք է բաց թողնվի՝ թե՛ ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործումը, թե՛ նոր արտադրանքի մշակման և յուրացման համար ծանրակշիռ պարգևավճարների սահմանումը, թե՛ հնացած արտադրանքի գների շոշափելի իջեցումները, թե՛ կադրերի որակավորման բարձրացումը, թե՛ այլևայլ բաներ։ Հարկավոր է արագացնել հնացած ստանդարտների ու հրահանգների վերանայումը, որոնք ձեռնարկություններին չեն խթանում բարելավելու արտադրանքի տեխնիկատնտեսական բնութագրերը։

Հասկանալի է, որ մեր ժամանակներում արդյունավետ զարգացման հիմքը արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների լայն արմատավորումն է։ Հարկավոր է դրականորեն գնահատել պլանի նախագծի կողմնորոշումը դեպի մեքենաների ու սարքավորումների նոր տեսակների ստեղծում և արտադրության մեջ դրանց յուրացում, դեպի առաջավոր տեխնոլոգիաների արմատավորման, արտադրանքի նորացման մասշտաբների մեծացումը։

Իսկ եթե գիտության և տեխնիկայի զարգացման պրոբլեմին նայելու լինենք ավելի լայն դիրքերից, ապա այդ բնագավառում տիրող իրավիճակը որոշակի մտահոգություն է առաջ բերում։ Ուստի քաղբյուրոն անհրաժեշտ համարեց ՍՄԿԿ Կենտկոմի առաջիկա պլենումում քննության առնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման և էկոնոմիկայի բոլոր օղակներում դրա կառավարման կատարելագործման հարցերը։ Հարկավոր է պլենումն այնպես նախապատրաստել, որ նրա որոշումները արմատական շրջադարձ ապահովեն մեր զարգացման կենսականորեն կարևոր այդ ուղղությունում։

Մենք պետք է ավելի եռանդագին զբաղվենք նաև կառավարման ամբողջ տնտեսական մեխանիզմի կատարելագործմամբ։ Այդ աշխատանքի սկիզբը դրվել է հինգ մինիստրությունների ձեռնարկությունների ինքնուրույնությունն ու պատասխանատվությունը ընդլայնելու տնտեսափորձով։ Առաջիկա տարում տնտեսափորձին կմիանան ևս 21 միութենական և հանրապետական մինիստրություններ։ Բացի դրանից, նոր պայմանների են փոխադրվում շատ բնագավառների կենցաղային սպասարկման ձեռնարկություններ։ Նախապատրաստվում են շինարարական կազմակերպությունների գործունեությունը կատարելագործելու, նախագծանախահաշվային գործը բարելավելու, օբյեկտների ժամանակին գործարկման համար շինարարների նյութական շահագրգռությունը բարձրացնելու առաջարկություններ։ Մշակվում են ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի արդյունավետ փոխգործողության նոր եղանակներ։ Ընդլայնվում է ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի կազմակերպման ու վարձատրության կոլեկտիվ ձևերի կիրառումը։

Մի խոսքով, ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու աշխատանքն ընթանում է լայն ճակատով։ Եվ դրա արդյունավետությունը մեծապես կախված կլինի մինիստրությունների ու գերատեսչությունների գործունեության ոճի ու մեթոդների, տնտեսական կառավարման բոլոր օղակների կատարելագործումից։ Ըստ երևույթին, օգտակար է շարունակել կառավարման ապարատի պարզեցումը, ավելորդ հաշվետվությունների, ամեն կարգի թղթաբանության կրճատումը։

Ընկերնե՛ր։ Էկոնոմիկայի զարգացումն արագացնելու մեր բոլոր ջանքերը վերջին հաշվով նպատակամղված են այն բանին, որ հնարավորություն ունենանք ավելի շատ միջոցներ հատկացնելու սոցիալական կարիքների համար, ավելի արագորեն բարձրացնելու բնակչության կենսամակարդակը։ Իսկն ասած, հենց սրան են նպատակամղված մեր պլանները։ Կուզենայի կանգ առնել միայն մի հարցի վրա՝ արդյունաբերական ապրանքներով և սպասարկումներով բնակչության ապահովումը վճռականորեն բարելավելու անհրաժեշտության վրա։ Աշխատավորների եկամուտները տարեցտարի աճում են։ Եվ դա օրինաչափ է մեր հասարակության համար։ Բայց օրինաչափ է նաև այն, որ գնորդի պահանջարկը ավելի ու ավելի մեծ չափով է տեղափոխվում բարձրորակ ապրանքների՝ նորաձև հագուստի ու կոշիկի, արդիական և հուսալի հեռուստա-



ցույցների, սառնարանների, տնային գործածության տեխնիկապես կատարյալ մյուս առարկաների վրա։

Իսկ հենց այդպիսի բարձրորակ ապրանքները չեն բավականացնում։ Արդյունաբերությունն անպատրաստ գտնվեց պահանջարկի այդ փոփոխությանը։ Արդյունաբերությունը շարունակում է առատորեն արտադրել համեմատաբար ցածր սպառողական մակարդակի ապրանքներ, իսկ ավելի մեծ պահանջարկ վայելող լավորակ ապրանքները քիչ են։ Ահա և ստացվում է, որ ապրանքային զանգվածի ընդհանուր աճի ֆոնի վրա արտադրանքի որոշ տեսակների գծով գոյացել է ապրանքակուտակում, ուրիշ տեսակների գծով՝ դեֆիցիտ։

Ուրիշ ինչով, եթե ոչ կոպիտ վրիպումներով կարելի է բացատրել լավորակ կոշիկի, առանձնապես մանկական կոշիկի բացահայտ պակասը վաճառքում։ Մի՞թե սա կարգ է, երբ կոշիկի խանութների դարակներին այժմ դարսված են գլխավորապես ամառային կոշիկներ։ Իսկ սեզոնին հարմար կոշիկ դժվար է ճարել։ Քիչ չեն դեպքերը, երբ խանութների վաճառասեղաններից անհետանում են մերթ մի տեսակ, մերթ մի ուրիշ տեսակ ապրանքներ, երբեմն արտադրության տեսակետից ամենահասարակ և ամենօրյա գործածության համար ամենաանհրաժեշտ ապրանքները։ Սա մասնավորապես վկայում է, որ ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության ղեկավարները չեն կարողացել անհրաժեշտ ճկունություն ապահովել շուկայի կոնյունկտուրան ուսումնասիրելու և հաշվի առնելու գործում, չեն հոգացել մի շարք կարևոր արտադրությունների վերակառուցման մասին։ Այս կշտամբանքը կարելի է հասցեագրել նաև մեքենաշինության շատ ճյուղերի, որոնք բնակչության համար ապրանքներ են թողարկում, ինչպես նաև առևտրական կազմակերպություններին։ Հենց առևտուրը պետք է հուսալի պատնեշ կանգնեցնի այն բանի առջև, որ անորակ արտադրանքը չթափանցի վաճառասեղաններ, միշտ և ամեն ինչում սկզբունքորեն պաշտպանի սպառողների շահերը։

Անցած տարվա վերջին քաղբյուրոն որոշում ընդունեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների ոլորտի զարգացման կոմպլեքսային ծրագրի մշակման մասին։ Մեր կուսակցական գիծն այստեղ անսահմանորեն պարզ է. ապահովել էկոնոմիկայի այն բոլոր ճյուղերի և օղակների արագ զարգացումը, որոնք զբաղված են ապրանքների արտադրությամբ և բնակչության սպասարկմամբ։ Այս նպատակով անհրաժեշտ է թե՛ դրանց տեխնիկական վերազինումը, թե՛ հումքային ռեսուրսներով ու նյութերով ապահովումը և թե բնակչության համար արտադրվող ապրանքների քանակի ու որակի հարցում աշխատողների շահագրգռության ուժեղացումը։ Ընկեր Հ. Ա. Ալիևը, որը գլխավորում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի՝ կոմպլեքսային ծրագրի մշակման ղեկավարող ու վերահսկող հանձնաժողովը, տեղեկացրեց, որ ծրագրի վրա կատարվող աշխատանքը ավարտվում է, և մոտ ժամանակներս կներկայացվի քաղբյուրոյի քննարկմանը։

Բայց արդեն այժմ հարկավոր է ապրանքների թողարկման և բնակչության սպասարկումների գործի մեջ ներգրավել առանց բացառության բոլոր մինիստրությունները, ձեռնարկություններն ու միավորումները։ Հարկավոր է առաջնակարգ ուշադրություն դարձնել այդ հարցերին, օգտագործել տեղական մարմիններին տրված լայն հնարավորություններն ու իրավունքները, հաշվենկատ կերպով տնօրինել ռեսուրսները, շուկան ավելի արագորեն հագեցնել պակասող ապրանքներով։

Ընկերնե՛ր։ Ամեն մի մեծ գործի հաջողությունը ուղղակի կախված է էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման մակարդակի հետագա բարձրացումից, մասսաների մեջ տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքի ըստ ամենայնի ուժեղացումից։ Եվ այստեղ չափազանց կարևոր են ղեկավարման ոճը, դրա համապատասխանությունը այսօրվա պահանջներին։

Անհրաժեշտ է ապահովել յուրաքանչյուր ռեգիոնի, յուրաքանչյուր ձեռնարկության էկոնոմիկայում տիրող վիճակի սիստեմատիկ վերլուծությունը, որակյալ կերպով կատարել հասունացած խնդիրների օպտիմալ լուծման ան-

ընդհատ որոնումը, ճիշտ ընտրել կադրերին, հոգատար կերպով աճեցնել նրանց և խիստ պատասխան պահանջել նրանցից։ Կուսակցական կոմիտեների, սովետական և տնտեսական մարմինների բոլոր գործողությունների, բոլոր կազմակերպական ու պրոպագանդիստական միջոցառումների ժամանակին ձեռնարկումը, դրանց հիմնավորվածությունը պետք է անխախտ օրենք դառնան։

Այս մոտեցումը շատ բանով հատուկ է Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լիտվայի, Վրաստանի կոմկուսների կենտկոմների, կուսակցության Մոսկվայի քաղկոմի, Լենինգրադի, Կալուգայի, Չելյաբինսկի, Ուլյանովսկի և մի շարք ուրիշ մարզկոմների գործունեությանը։ Ուստի միանգամայն օրինաչափ է, որ այստեղ հասնում են պլանների կայուն կատարման, արտադրության ինտենսիվացման շոշափելի արդյունքների։

Եվ ընդհակառակն, այնտեղ, որտեղ կուսակցական կոմիտեները լրիվ չափով չեն դրսևորում իրենց կազմակերպիչ դերը, այնտեղ թույլ է նրանց ներգործությունը արտադրության զարգացման, բնակչության կարիքների և պահանջմունքների բավարարման հարցերի լուծման վրա։ Այս բանը մասնավորապես ցույց տվեց Կենտկոմի քարտուղարությունում կուսակցության Կալինինի մարզկոմի հաշվետվության քննարկումը։ Նման թերությունները հարկավոր է վճռականորեն շտկել, վերջ տալ իներցիային, ձևամոլությանը, դեկլարատիվությանը, որտեղ էլ որ դրանք դրսևորվեն։

Կուսակցական կոմիտեների պարտականությունների և հոգսերի շրջանակում կարևորագույն տեղ պետք է զբաղեցնի հնգամյակի ավարտական տարվա պլանի անվերապահ կատարման համար աշխատավորական կոլեկտիվների մոբիլիզացումը։ Կյանքը ցույց է տվել. որքան ավելի մատչելի ձևով ենք մենք մարդկանց բացատրում թե՛ մեր ընդհանուր պրոբլեմները և թե յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր տեղամասի, յուրաքանչյուր աշխատավորի խնդիրները, այնքան բարձր են լինում արտադրական ցուցանիշները։

Հարկավոր է, հենվելով սկզբնական կուսակցական կազմակերպությունների վրա, մարդկանց աշխատանքային ստեղծագործական ձեռներեցությունը նպատակամղել պրակտիկ գործերի։ Լրիվ ուժով պիտի օգտագործվի այնպիսի մի հզոր լծակ, ինչպիսին է սոցիալիստական մրցությունը։ Արտադրական արդյունքները մեծապես կախված են այն բանից, թե սոցիալիստական մրցությունը ինչպես է կազմակերպված աշխատավորական կոլեկտիվներում, թե ինչպիսի ձևեր են ընտրված, թե ինչպես է ապահովվում հրապարակայնությունը մրցության մեջ։

Չէ որ գաղտնիք չէ, որ մինչև օրս արտաքուստ բարեհաջող ընդհանուր ցուցանիշների ետևում հաճախ թաքնվում է մեծ թվով ձեռնարկությունների ետ մնալը։ Ահա մի բնորոշ օրինակ։ Շինանյութերի արդյունաբերության մինիստրության առաջավոր կոլեկտիվները այս տարվա ինն ամսում ամբողջությամբ վերցված արտադրանքի ինքնարժեքը պլանի համեմատությամբ իջեցրել են 117 միլիոն ռուբլու չափով։ Սակայն միաժամանակ համարյա յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկությունում ծախսումների նորման գերազանցվել է։ Այդ պատճառով ամբողջությամբ վերցված մինիստրությունը ավելի քան կրկնապատիկ պակաս տնտեսում է ստացել։

Մենք պետք է ավելի շատ ուշադրություն դարձնենք նաև այսպես կոչված «միջակներին», նրանց, ովքեր պլանը մի կերպ են կատարում, բայց առաջավորների շարքն անցնել չեն շտապում, ուժերը գերլարել չեն ուզում։ Այստեղ է մեր ռեզերվը, և ոչ փոքր ռեզերվը։ Բայց միևնույն ժամանակ հարկավոր է հաշվի առնել, որ նրանք, ովքեր այսօր չեն ձգտում իրենց աշխատանքի բարելավման, վաղը կարող են համալրել ետ մնացողների շարքերը։

Պլանների կատարման համար մղվող պայքարում, մրցության զարգացման, առաջավոր փորձի պրոպագանդման գործում մենք ակտիվ գործողություններ ենք ակնկալում մեր արհմիություններից, կոմերիտմիությունից։ Նրանք կոչված են զարգացնելու բանվորական ձեռներեցությունը, նպաստելու



հանդիպական պլանների ընդունմանը, հասնելու այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում ստեղծվեն բարձր-արտադրողական աշխատանքի լավագույն պայմաններ։

Լրիվ չափով պետք է դրսևորվի կոմունիստների ավանգարդային դերը։ Խոսքն առաջին հերթին այն մասին է, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ ցույց տա աշխատանքային բարեխղճության, ձեռներեցության և ստեղծագործության, բարձր կազմակերպվածության և կարգապահության անձնական օրինակ։ Բայց միայն դա քիչ է։ Այսօր կուսակցականության կարևորագույն չափանիշը ոչ միայն այն է, թե ինչպես է աշխատում և ինչպես է իրեն պահում կոմունիստը, այլև այն, թե նա որքան վճռականորեն, ակտիվորեն է պայքարում թերությունների դեմ, հասնում գործերի վիճակի ընդհանուր բարելավման։

Հարկավոր է վճռական ուղղություններում համակենտրոնացնել մասսայական ինֆորմացիայի միջոցների ջանքերը։ Աջակցություն ցույց տալ նորարարների ձեռնարկումներին, անդուլ վերահսկողության տակ առնել պարտավորությունների կատարումը, օպերատիվ ինֆորմացիան, սուր ահազանգումները, հիմնավոր քննադատությունը հմտորեն զուգորդել ամեն դրականի մասին, հերոսական աշխատանքի մարդկանց մասին վառ պատումի հետ՝ ահա թե ինչ է հարկավոր այժմ։

Վերջում թույլ տվեք վստահություն հայտնել, որ կոմունիստները, աշխատավորները 1985 թվականի պլանը կընկալեն որպես կոնկրետ գործողությունների ծրագիր և հաջողությամբ կկատարեն այն։ Մենք բոլոր հնարավորություններն ունենք արժանավայել կերպով ավարտելու հնգամյակը, աշխատանքային բարձր նվաճումներով դիմավորելու լենինյան կուսակցության XXVII համագումարը։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1984 թվականի նոյեմբերի 22-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հոկտեմբերյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումներից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառի բովանդակած դրույթներից ու եզրահանգումներից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Մ. Մխիթարյանը, «Հայգլխջրշինի» պետ ընկ. Մ. Գ. Գևորգյանը, ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Ս. Ալեքսանյանը, Հոկտեմբերյանի շրջանի «Նաիրի» սովխոզի բրիգադավար ընկ. Գ. Դ. Բաղդասարյանը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. Հ. Վ. Թարջումանյանը, Արթիկի շրջանի Անուշավան գյուղի կոլտնտեսության բրիգադավար ընկ. Հ. Գ. Սարգսյանը, Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր ընկ. Ռ. Հ. Ծաոոյանը, Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզի դիրեկտոր ընկ. Ս. Ս. Հարությունյանը, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման Երևանի էլեկտրալամպերի գործարանի վերահսկիչ ընկ. Թ. Ա. Ներսիսյանը, «Հայպետջրնախագիծ» նախագծային ինստիտուտի դիրեկտոր ընկ. Մ. Վ. Ծովյանը, ժողովրդական դեպուտատների Վարդենիսի շրջանային սովետի գործկոմի նախագահ ընկ. Ի. Ս. Բաղիրովը, ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր ընկ. Վ. Վ. Ալեքսանդրյանը:

Քննարկված հարցի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. Պոլյակովը:

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*Ընկերնե՛ր:*

*ՍՄԿԿ Կենտկոմի՝ հոկտեմբերին կայացած հերթական պլենումը քննարկեց «Երկրի պարենային ֆոնդի կայուն մեծացման նպատակով մելիորացիայի, մելիորացված հողերի օգտագործման արդյունավետության բարձրացման երկարաժամկետ ծրագրի մասին» հարցը:*

*Պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյի արտասանած վառ, խորապես բովանդակալից ճառի մեջ տրված է արդի փուլում երկրի գյուղատնտեսության վիճակի խոր և համակողմանի վերլուծությունը, ըստ արժանվույն է գնահատված գյուղի սոցիալ-տնտեսական զարգացման, երկրի պարենային ծրագրի իրականացման նպատակով կուսակցական կոմիտեների, սովետական ու տնտեսական մարմինների կողմից կատարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքը:*

*Պլենումը լիովին հավանություն տվեց երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հիմնական ուղղությունների, երկրի պարենային ֆոնդի կայուն մեծացման գործում մելիորացման դերի բարձրացման վերաբերյալ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառի բովանդակած դրույթներին ու հետևություններին:*

*Պլենումը հավանություն տվեց մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում հողերի մելիորացման՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի կողմից հաստատված ծրագրին, որը շարադրված է պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկեր Ն. Ա. Տիխոնովի զեկուցման մեջ:*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թվականի մայիսյան պլենումի մշակած՝ հողերի լայն մելիորացման կուրսի հետևողական իրականացման շնորհիվ երկրում գյուղատնտեսական հողահանդակների նորացման հսկայական աշխատանք է կատարվել: ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումներին համապատասխան, ագրարային հատվածում կատարելագործվում են կառավարումն ու տնտեսական մեխանիզմը, ամրապնդվում է կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, գյուղում իրականացվում են սոցիալական լայն վերափոխումներ:*

*Հայտնի է, թե Հայաստանի կոմկուսի Կենտկոմը ինչպիսի նշանակություն է տալիս հանրապետության գյուղատնտեսության զարգացմանը: Կուսակցության համագումարներում, Կենտկոմի պլենումներում, հատկապես 1975 թվականի հունվարյան, հուլիսյան և 1978 թվականի հուլիսյան պլենումներում մենք մշակել ենք գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, ոռոգելի հողերի օգտագործման արդյունավետության բարձրացման, հողերի մելիորացման ընդլայնման, ջրատնտեսական շինարարության կոմպլեքսային ծրագիր: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1982 թվականի հունիսյան պլենումը հավանություն տվեց հանրապետության պարենային ծրագրին:*

*Մշտապես ավելացվում են հողերի մելիորացմանը հատկացվող կապիտալ ներդրումները: 1966—1984 թվականներին դրանք կազմեցին ավելի քան 1,35 միլիարդ ռուբլի, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 884 միլիոն ռուբլի: Գործարկված հիմնական ֆոնդերի արժեքը հասել է 915 միլիոն ռուբլու, ոռոգելի հողատարածությունը ավելացել է 123 հազար հեկտարով, ջրարբիացվող արոտավայրերինը՝ 350 հազար հեկտարով: Աշխատանքներ են կատարվել 116 հազար հեկտար տարածության ոռոգման համակարգերը վերակառուցելու և դրանց ջրապահովումը բարձրացնելու ուղղությամբ:*

*Այդ աշխատանքները հատկապես ծավալվեցին «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձ-*

* Տպագրվում է համառոտումներով:

րացման միջոցառումների մասին» 1977 թվականին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ մեր հանրապետության համար պատմական նշանակություն ունեցող որոշման ընդունումից հետո։

Այդ որոշումը գործունեության կոմպլեքսային ծրագիր է՝ նպատակամղված հանրապետության գյուղատնտեսության զարգացման մի շարք արմատական պրոբլեմների լուծմանը, մելիորացման նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը, գետերի ազատ հոսքը կարգավորելու միջոցով շուրջ մեկ միլիարդ խորանարդ մետր ընդհանուր ծավալով 16 խոշոր ջրամբարներում ջրակուտակ տարողությունների ստեղծմանը։ Որոշմամբ նախատեսված են Արարատյան դաշտում և նրա նախալեռնային շրջաններում ոռոգելի նոր հողերի գյուղատնտեսական յուրացման և շրջանառության մեջ դնելու, ոռոգելի հողագործության կուլտուրան բարձրացնելու և ջրի ռեսուրսները արդյունավետ օգտագործելու կոնկրետ միջոցառումներ։

Այդ խոշորածավալ ծրագիրը հետևողականորեն իրականացվում է։

Ավարտվել է Ախուրյանի 525 միլիոն խորանարդ մետր տարողությամբ ջրամբարի շինարարությունը, որով ապահովվում է Թալինի, Անիի, Հոկտեմբերյանի և Բաղրամյանի շրջաններում 30 հազար հեկտար նոր հողերի ոռոգումը, կառուցվել է Ջողազի 45 միլիոն խորանարդ մետր տարողությամբ ջրամբարը՝ Իջևանի շրջանում 2.000 հեկտար և Նոյեմբերյանի շրջանում 2.700 հեկտար հողատարածություն ոռոգելու համար։ Շահագործման են հանձնվել Սևաբերդի և Հալավարի ջրամբարները, ավարտվում է Հախումի ջրամբարի շինարարությունը, աշխատանքներ են կատարվում Հերհերի, Գետիկի և Դավիթբեկի ջրամբարների կառուցման ուղղությամբ։ Մշակվել են մի շարք նոր ջրամբարների կառուցման տեխնիկատնտեսական հիմնավորումները։

Շարունակվում են Արարատյան դաշտի գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավման և աղակալած հողերի յուրացման, ինչպես նաև Թալինի ոռոգիչ համակարգի երրորդ հերթի շինարարության կոմպլեքսային աշխատանքները 30 հազար հեկտար տարածության վրա, որից 18 հազար հեկտարը Բաղրամյանի շրջանի 8 նոր սովխոզներինն է։

Հանրապետությունում իրականացվում են Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման նպատակին ուղղված մի շարք խոշոր միջոցառումներ։ Արփա—Սևան 49 կիլոմետրանոց թունելի շինարարությունն ավարտվելուն պես, որով Արփա գետից տարեկան 250 միլիոն խորանարդ մետր ջուր է լցվում Սևանա լիճ, սկսվեց Որոտան գետի ջրահոսքի մի մասը (տարեկան 160 միլիոն խորանարդ մետր) Սևանա լիճ ուղղելու ջրատեխնիկական կառուցվածքների համալիրի շինարարությունը։

Կազմվել և հաստատվել է Սևանա լճի ավազանի բնության պահպանության և նրա բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կոմպլեքսային սխեման, որով միջոցառումներ են նախատեսված լճի մակարդակը 5—6 մետրով բարձրացնելու համար։ Սևանա լճի ջուրը աղտոտելուց պահպանելու նպատակով կառուցվում են օղակաձև կոլեկտորը և Սևան—Հրազդան կոյուղային կոլեկտորը, մաքրման կառուցվածքներ և այլ օբյեկտներ։

Ավարտվում է Ռանչպարի 40 միլիոն խորանարդ մետր հզորությամբ պոմպակայանի կառուցումը Սևանա լճի ջրի փոխարեն այլ ջուր օգտագործելու նպատակով։ Նախապատրաստական աշխատանքներ են կատարվում Եղվարդի 220 միլիոն խորանարդ մետր տարողությամբ ջրամբարի կառուցման ուղղությամբ՝ Սևանի 90 միլիոն խորանարդ մետր ջրի փոխհատուցման և Նաիրիի ու Աշտարակի շրջաններում 10 հազար հեկտար նոր հողեր ոռոգելի դարձնելու համար։

Այդ և անցկացվող մյուս աշխատանքների շնորհիվ ընդհանուր առմամբ կկարգավորվի մեկ միլիարդ 252 միլիոն խորանարդ մետր ջրի հոսքը, որ թույլ կտա ավելացնել ոռոգելի հողերի մակերեսը, բարձրացնել մելիորացվածների ջրապահովումը։

Հետևողականորեն իրականացվում են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և հաջորդ պլենումների որոշումները, հանրապետության պարենա-



յին ծրագիրը։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալի աճի տեմպերը տասնմեկերորդ հնգամյակի չորս տարում կկազմեն 11,8 տոկոս, պլանով նախատեսված 8,3 տոկոսի դիմաց։

Գյուղատնտեսական մթերքների միջին տարեկան արտադրությունը կկազմի ավելի քան 871 միլիոն ռուբլի, այսինքն՝ 89 միլիոն ռուբլով ավելի, քան տասներորդ հնգամյակում և 241 միլիոն ռուբլով ավելի, քան իններորդ հնգամյակում։ Այսպիսով, աճը կկազմի համապատասխանաբար 11,8 և 38,8 տոկոս։

Ի պատիվ գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական համալիրի մյուս ճյուղերի աշխատողների, պետք է նշել, որ նրանք, չնայած վերջին երկու տարվա կլիմայական դժվարին պայմաններին, ամբողջությամբ վերցրած կատարեցին իրենց առջև դրված խնդիրները, ապահովելով հիմնական գյուղատնտեսական կուլտուրաների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը։ Մենք գոհունակությամբ ենք նշում նաև արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատավորական կոլեկտիվների ներդրած խոշոր ավանդը գյուղատնտեսության զարգացման գործում։

Հաջողությամբ է ավարտվում ընթացիկ գյուղատնտեսական տարին։ Մթերակայաններին, վերամշակող ձեռնարկություններին և առևտրական կազմակերպություններին հանձնվել են 67,1 հազար տոննա հացահատիկ, 230,6 հազար տոննա խաղող, 115,7 հազար տոննա պտուղ, 143,9 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 341,8 հազար տոննա բանջարեղեն, 126,6 հազար տոննա կարտոֆիլ։ Նոյեմբերի 1-ի տվյալներով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ մսի մթերումների ծավալը մեծացել է 9,5 հազար տոննայով, ձվինը՝ 25 միլիոն հատով։ Ընդամենը պետք է նշել, որ հանրապետությունում առաջին անգամ այս տարի գնվելու է շուրջ 116—117 հազար տոննա միս։ Չնայած հանրապետության գրեթե բոլոր ռեգիոններն ընդգրկած տևական երաշտին, տնտեսությունները կուտակել են ավելի քան 2,2 միլիոն տոննա կոշտ և հյութալի կերեր։

Ինչպես տեսնում ենք, քիչ գործ չի արված։ Բայց է՛լ ավելի շատ անելիքներ կան մոտակա տարիներին։

«Երկրի պարենային ֆոնդի կայուն մեծացման նպատակով մելիորացիայի, մելիորացված հողերի օգտագործման արդյունավետության բարձրացման երկարաժամկետ ծրագրի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհըրդի որոշմամբ նախատեսվում է՝ Հայկական ՍՍՀ-ում ոռոգվող հողերի մակերեսը հասցնել 400—470 հազար հեկտարի, ընդլայնել հողերի մելիորացման աշխատանքները Արարատյան դաշտում և Ախուրյան գետի ավազանում, ջրատնտեսական աշխատանքների կոմպլեքս իրականացնել՝ Հրազդան գետի ավազանում ոռոգելի հողերի ջրապահովումը բարձրացնելու համար, ավարտել Կապսի և Եղվարդի ջրամբարների շինարարությունը, ոռոգելի հողերում ավելացնել խաղողի ու պտղի արտադրությունը, ստեղծել կերի արտադրության կայուն բազա։

Որպեսզի հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները, սկզբնական կուսկազմակերպությունները ճիշտ կողմնորոշվեն և լավագույնս լուծեն Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրները՝ հողերի մելիորացումը լայն մասշտաբներով իրականացնելու միջոցով գյուղատնտեսության հետագա ինտենսիվացման ուղղությամբ, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, մենք պետք է քննադատաբար վերլուծենք ձեռք բերված արդյունքները, բացահայտենք մեր աշխատանքում եղած թերությունները, որոնք կասեցնում են հանրապետության ոռոգելի հողագործության արդյունավետության բարձրացումը։

Մեզ համար հողի ռացիոնալ և արդյունավետ օգտագործումը բացառիկ կարևոր, առաջնահերթ սոցիալ-տնտեսական խնդիր է։ Հողի յուրաքանչյուր հեկտարը պետք է տարեցտարի աշխատի ավելի ինտենսիվ, տա ավելի ու

ավելի մեծ հատույց։ Մի խոսքով, մենք պարտավոր ենք հետևողականորեն բարձրացնել հողագործության ինտենսիվացումն ու մթերատվությունը։ Այստեղ գլխավոր, վճռական գործոնը ոռոգվո՛ղ հողերի հատույցի բարձրացումն է։

Ներկայումս այդ հողերի տարածությունը կազմում 282,2 հազար հեկտար կամ՝ հանրապետության բոլոր գյուղատնտեսական հողահանդակների 21,2 տոկոսը։ Հանրապետության հողագործության համախառն արտադրանքի տարեկան միջին հաշվով 82—83 տոկոսը ստացվում է ոռոգվող հողերից։

Անհրաժեշտ է նշել, որ մեզանում որոշակի աշխատանք է տարվում ոռոգելի հողագործության արդյունավետության բարձրացման ուղղությամբ։ Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին գյուղատնտեսական կուլտուրաների միջին բերքատվությունը 9-րդ հնգամյակի միջին տարեկան բերքատվության համեմատությամբ ավելացել է. կարտոֆիլինը՝ 67,1 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 36 տոկոսով, խաղողինը՝ 48,6 տոկոսով, բանջարեղենինը՝ 11,1 տոկոսով, պտուղներինը՝ 20,7 տոկոսով, հացահատիկային կուլտուրաներինը՝ 29,2 տոկոսով։

Ոռոգելի հողի հեկտարի պոտենցիալ մեծ հնարավորությունների մասին է վկայում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը հանրապետության առաջավոր տնտեսություններում։

Էջմիածնի շրջանի Լենուղի գյուղի կոլտնտեսությունում այս տարի հացահատիկի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 61,8 ցենտներ բերք, իսկ նույն տնտեսության ընկ. Սահակ Ամիրյանի գլխավորած բրիգադը այդ ցուցանիշը հասցրել է հեկտարից 76,5 ցենտների։ Կամոյի շրջանի Բատիկյանի և Լանջաղբյուրի սովխոզները 1984 թվականին հեկտարից ստացան ավելի քան 300 ցենտներ կարտոֆիլ։ Արարատի շրջանի Վանաշեն գյուղի կոլտնտեսությունը 68 հեկտար խաղողի այգիների մեկ հեկտարից ապահովել է միջին հաշվով 352,2 ցենտներ բերք։

Հեկտարից միջին հաշվով 107—144 ցենտներ պտուղ են ստացել Հոկտեմբերյանի շրջանի Ջանֆիդա, Հոկտեմբեր, Մայիսյան գյուղերի տնտեսությունները, Ախուրյանի շրջանի Մայիսյան, Ոսկեհասկ, Ղարիբջանյան, Ազատան գյուղերի կոլտնտեսությունները և ուրիշ շատ տնտեսություններ ամեն տարի հեկտարից ստանում են 500—600 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Արտաշատի, Մասիսի, Հրազդանի և այլ շրջանների շատ տնտեսություններ բանջարեղեն կուլտուրաների միջին բերքատվությունը հասցրել են հեկտարից 700—800 և ավելի ցենտների։

Վերը նշված ցուցանիշները ձեռք են բերվել ոռոգելի հողերում արտադրությունն ինտենսիվացնելու, առաջավոր տեխնոլոգիաներ, բարձր բերքատու սորտեր ներդնելու, ջրովի հողագործության կուլտուրան բարձրացնելու, աշխատանքի կազմակերպումը բարելավելու և այլ գործոնների շնորհիվ։

Ցավոք, այդպիսի բարձր ցուցանիշների, ինչպես ասացինք, հասել են միայն առաջավոր տնտեսությունները։ Հանրապետությունում ամբողջությամբ վերցրած՝ ոռոգվող հողերում աճեցվող գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը դեռևս անթույլատրելի կերպով ցածր է։ Բնավ չի կարելի հաշտվել այն վիճակի հետ, երբ մեզանում ոռոգվող հեկտարից ստանում են 1.100—1.200 ռուբլու համախառն արտադրանք և կամ՝ հեկտարից ընդամենը 22—23 ցենտներ հացահատիկ, 140—150 ցենտներ կարտոֆիլ, 240—250 ցենտներ բանջարեղեն, 70—80 ցենտներ բոստանային կուլտուրա, 130—140 ցենտներ սիլոսացու կուլտուրա, 45—50 ցենտներ պտուղ։

1983 թվականին Աշտարակի, Ամասիայի շրջաններում ջրովի հողատարածության մեկ հեկտարից ստացել են ընդամենը 12—13 ցենտներ հացահատիկ, իսկ Թալինի շրջանում՝ 7,2 ցենտներ։

Թումանյանի և Ստեփանավանի շրջաններում ոռոգվող յուրաքանչյուր հեկտարից ստացել են 447—474 ցենտներ կերի արմատապտուղ, որը մենք, իհարկե, չենք կարող համարել առանձնապես բարձր ցուցանիշ, մինչդեռ Վարդենիսի, Կրասնոսելսկի, Սիսիանի շրջաններում այդ ցուցանիշը 100 ցենտներից էլ չի անցել։



Անթույլատրելի է, որ կարտոֆիլի մշակությամբ զբաղվող տնտեսությունների 11,5 տոկոսը ստանում է հեկտարից միջին հաշվով 50 ցենտներ կարտոֆիլ կամ մոտավորապես այնքան, որքան տնկել են։ Ցուցանիշներն անմխիթարական են նաև բանջարաբուծության բնագավառում։ Բանջարաբուծությամբ զբաղվող տնտեսությունների 25 տոկոսում բանջարային կուլտուրաների միջին բերքատվությունը հազիվ է հասնում հեկտարից 100 ցենտների։

Շատ ցածր է բազմամյա տնկարկների բերքատվությունը։ Վիճակն ավելի բարվոք չէ սիլոսացու եգիպտացորենի մշակության գործում։ Այդ արժեքավոր կուլտուրայի միջին բերքատվությունը հանրապետությունում 1983 թվականին կազմել է հեկտարից 189 ցենտներ։ Իսկ Թալինի, Սպիտակի, Կրասնոսելսկի, Վարդենիսի և Անիի շրջաններում «հաջողացրել են» ստանալ 2—3 անգամ պակաս կանաչ զանգված։

Իհարկե, հեշտ է որպես պատրվակ բերել եղանակի վատթար պայմանները։ Եղանակը, իրոք, միշտ չէ, որ բարի է լինում գյուղի աշխատավորների նկատմամբ։ Բայց չէ՞ որ տվյալ դեպքում խոսքը վերաբերում է ոռոգելի հողերին և դրանցից երաշխավորված բերքի ստացմանը։ Նույնիսկ եթե համաձայնելու լինենք այդպիսի ղեկավարների ու մասնագետների տեսակետին, ապա անկարելի է բացատրել, թե հողակլիմայական համանման պայմաններում գտնվող ուրիշ տնտեսություններ ինչպես են հասնում վերջնական բարձր արդյունքների։ Արարատի շրջանի Մեծ Վեդի գյուղի կոլտնտեսությունը ընթացիկ տարում յուրաքանչյուր հեկտարից ստացել է 224 ցենտներ խաղող, 630 ցենտներ բանջարեղեն, 237 ցենտներ կարտոֆիլ, իսկ Շիդլու գյուղի կոլտնտեսությունը համապատասխանաբար հավաքել է 94,3 ցենտներ խաղող, 220 ցենտներ բանջարեղեն և ընդամենը 40 ցենտներ կարտոֆիլ։ Այստեղ մտածելու շատ բան ունեն կուսակցության շրջանային կոմիտեն և ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմը։

Շամշադինի շրջանի Պառավաքարի սովխոզում յուրաքանչյուր հեկտարից ստացել են 100 ցենտներ խաղող, որն ինքնըստինքյան շատ բարձր ցուցանիշ չէ, իսկ նույն շրջանի Ծաղկավանի սովխոզում հավաքել են դրանից չորս անգամ պակաս։ Սրան պետք է համապատասխան գնահատական տան և ետ մնացող տնտեսություններում գործերը բարելավելու կոնկրետ միջոցներ ձեռնարկեն կուսակցության շրջկոմը և ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմը։ Նման օրինակներ կարելի է բերել նաև հանրապետության այլ շրջաններից։

Հարկ է ուղղակի ասել, որ բերքատվության այսպիսի խայտաբղետությունը հետևանք է ագրոտեխնիկայի պահանջների կոպիտ խախտումների, հողագործության կուլտուրայի և արտադրության կազմակերպման, հատկապես ոռոգման աշխատանքների ցածր մակարդակի, սխալ ցանքաշրջանառությունների, գյուղատնտեսական կուլտուրաների ու սորտերի սխալ ընտրության, սերմնաբուծության անբավարար վիճակի և, ի վերջո, ցածր կարգապահության, կադրերի, հատկապես տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների անպատասխանատվության։

Մյուս կողմից, դա խոսում է նաև պլանավորման թերությունների, գյուղատնտեսական կուլտուրաների արտադրության ոչ ռացիոնալ մասնագիտացման ու սխալ տեղաբաշխման մասին։

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրությունը, ագրոարդյունաբերական համալիրի մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները, շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդները պետք է հետևություններ անեն քննադատությունից, կոնկրետ միջոցառումներ մշակեն և իրականացնեն յուրաքանչյուր տնտեսությունում ոռոգելի հողերի հատույցը ավելացնելու համար, բարձրացնեն տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների պատասխանատվությունը այդ ասպարեզում, որոնցից շատերը փորձում են գործը կազմակերպելու իրենց անկարողությունը քողարկել զանազան պատրվակնե-

րով ու պատճառաբանություններով, իսկ հիմնականում՝ ոռոգման ջրի պակասով, մինչդեռ թույլ են տալիս հենց ջրի զգալի գերածախս։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական համալիրի հարցերի հանձնաժողովը պետք է ամենակարճ ժամկետում գործնական միջոցներ ձեռնարկի ոռոգելի հողերում պլանավորումը բարելավելու, արտադրության մասնագիտացումը կատարելագործելու համար։

Անհրաժեշտ է ավելի հետևողականորեն և լայնորեն ներդնել հողագործության ինտենսիվ համակարգերը։ 1984 թվականին մեր հանրապետությունում կազմակերպվել է 25 հազար հեկտար տարածության վրա բարձր բերքի ծրագրավորված աճեցում։ Առաջին արդյունքները հուսադրող են և ապացուցում են այդ մեթոդի հեռանկարայնությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հունիսյան պլենումների ձեռնարկած միջոցների շնորհիվ հանրապետությունում հողօգտագործման վիճակը որոշ չափով բարելավվել է։ Բայց մենք դեռևս չենք հասել այն բանին, որ հողի, առավել ևս վարելահողի ոչ մի հեկտար չմնա անօգտագործելի։ Չէ՛ որ հենց միայն 1983 թվականին չի օգտագործվել 2,7 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն և չի ջրվել 13,4 հազար հեկտար։ Անհրաժեշտ է պրակտիկայից առհասարակ արմատախիլ անել հողերի շռայլման և չօգտագործման փաստերը։ Պետք է միշտ հիշել, որ ոռոգելի հողերը ոսկի ֆոնդ են, և դրանց յուրաքանչյուր հեկտարի արդյունավետ օգտագործումը պետք է առանձին հոգածության և ուշադրության առարկա լինի։

Պետք է կարգուկանոն հաստատել ոռոգելի հողերի հաշվառումը կազմակերպելու գործում։

Մենք ստիպված ենք այսօր Կենտկոմի պլենումում մեկ անգամ ևս նշել, որ անցյալում իրականացված մելիորացման աշխատանքների ցածր որակը, այդ գործի նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքը և վոլյունտարիստական մոտեցումը մեզ վրա թանկ են նստել։ Չէ՛ որ, որքան էլ տարօրինակ է, շատ խոշոր հողազանգվածներ ոռոգելի են ձևակերպվել, հենց որ այդտեղ է հասցվել ջրատարը, հասցվել է, սակայն, առանց ոռոգման ցանցի, իսկ երբեմն էլ՝ նույնիսկ առանց ջրի։ Պատահել է նաև, որ իբրև ոռոգելի են ձևակերպվել անգամ այն հողերը, որոնք ջրվել են անձրևով կամ հեղեղաջրով։ Այս ամենն իրեն այսօր էլ զգալ է տալիս։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում նշեց, որ համազգային պրոբլեմը հացահատիկի արտադրության անշեղ ավելացումն է այն հաշվով, որ մոտակա տարիներին լիովին բավարարվեն երկրի բոլոր պահանջմունքները։ Մյուս անհետաձգելի խնդիրն է՝ ամրապնդել անասնապահության մեջ առկա դրական միտումները, ապահովել դրա արագ զարգացումը։

Վերջին տարիներս, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հանրապետությունը կայուն կերպով կատարում է հացահատիկի մթերումների սահմանված պլանները։

Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Ախուրյանի և այլ շրջանների շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ, կիրառելով առաջավոր ագրոտեխնիկա, ամեն տարի ստանում են հացահատիկային կուլտուրաների կայուն բարձր բերք։

Սրա հետ մեկտեղ հացահատիկի մշակության կազմակերպման գործում մեր հանրապետությունում տակավին քիչ չեն թերություններն ու չլուծված հարցերը։ Շատ տնտեսություններ ու շրջաններ՝ ամբողջությամբ վերցրած, ահա արդեն երկար տարիներ դոփում են միևնույն տեղում, նույնիսկ վատացրել են ցուցանիշները։ Տասնմեկերորդ հնգամյակի չորս տարում հանրապետությունում հացահատիկի միջին տարեկան համախառն բերքը տասներորդ հնգամյակի համապատասխան ցուցանիշների համեմատությամբ նվազել է 2—3 տոկոսով։ Այստեղ, իհարկե, իր դաժան սրբագրումն է կատարել երաշտը։ Բայց գլխավոր պատճառը մեր աշխատանքի թերություններն են։ Հանրապետությունում տակավին չեն լուծված կոլտնտեսություններն ու սովխոզները հացահատիկային



կուլտուրաների որակյալ սերմացուով՝ ըստ պահանջմունքի լրիվ ապահովելու, սերմնաբուծական տնտեսությունների մասնագիտացման ու համակենտրոնացման, արտադրության մեջ տեղական սելեկցիայի նոր, բարձր բերքատու սորտերի լայն ներդրման հարցերը։ Շատ վայրերում ցածր է ագրոտեխնիկայի մակարդակը։ Դեռևս զգալի կորուստներ են թույլ տրվում բերքահավաքի ժամանակ։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի ագրոարդյունաբերական համալիրի հանձնաժողովը, գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործկոմները պետք է լրացուցիչ միջոցներ ձեռնարկեն, որպեսզի ապահովեն Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1982 թվականի հոկտեմբերյան պլենումի առաջադրած խնդրի կատարումը՝ մոտակա տարիներին հանրապետությունում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հասցնել հեկտարից 30—35 ցենտների, իսկ համախառն բերքը՝ 400 հազար տոննայի։ Ընդսմին պետք է հիշել, որ նախատեսված բնագծերին մենք պետք է հասնենք ճյուղի ինտենսիվացման միջոցով միայն, առանց հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության ավելացման։

Վերջին տարիներս հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները զգալի աշխատանք են կատարել անասնապահության ինտենսիվացման ուղղությամբ։ Տասնմեկերորդ հնգամյակում, 9-րդ հնգամյակի համեմատությամբ, մսի մթերումների միջին տարեկան ծավալը ավելի է 49,6 տոկոսով, կաթինը՝ 43,6 տոկոսով, ձվինը՝ 2,2 անգամ։ Ըստ նախնական հաշվարկների, 1984 թվականին կովերի միջին կաթնատվությունը հանրային հատվածում կկազմի գրեթե 2.075 կիլոգրամ, իսկ հանձնվող խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը՝ 315 կիլոգրամ, որ համապատասխանաբար 379 և 71 կիլոգրամով ավելի է, քան 1975 թվականին։

Պատշաճը հատուցելով հանրապետության անասնապահների նվաճումներին, պետք է նշել, որ մենք այստեղ դեռևս ունենք չօգտագործված շատ ռեզերվներ և հնարավորություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի հոկտեմբերյան պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշեց. «Մենք պետք է անասունների մթերատվությունը նախ և առաջ բարձրացնենք նախիրը որակապես բարելավելու և կերի բազան վճռականապես ամրապնդելու միջոցով։ Նույն գլխաքանակի պայմաններում կերի, աշխատանքի միջոցների ռացիոնալ ծախսումներով ստանալ ավելի շատ արտադրանք՝ այսպիսին պետք է լինի անասնապահության զարգացման հիմնական ուղղությունը»։

Այս խնդրի կատարմանը մենք պետք է նպատակամղենք կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական աշխատանքը, անասնապահների, գյուղատնտեսության աշխատավորական կոլեկտիվների ջանքերը։

Վերջին տարիներս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը մի շարք կոնկրետ միջոցներ են ձեռնարկել կերի արտադրությունը ինտենսիվացնելու նպատակով։ Այդ ասպարեզում դրական արդյունքները քիչ չեն։

Սակայն մի շարք շրջաններում անբավարար են իրականացնում կերի արտադրության ինտենսիվացման, այն ինքնուրույն ճյուղի վերածելու միջոցառումները։ Բոլոր տնտեսությունները չէ, որ կատարել են ջրովի հողերում կերային կուլտուրաների ցանքատարածության ընդլայնման, առվույտի ու կորնգանի ցանքատարածության ավելացման, բազմամյա և մարգագետնային ու արոտային խոտաբույսերի սերմացուի արտադրության, խոտհարքներն ու արոտավայրերը օրգանական ու հանքային պարարտանյութերով պարարտացնելու առաջադրանքները։ Դանդաղ են ներդրվում այնպիսի տեխնոլոգիական պրոցեսներ, ինչպիսիք են խոտի բրիկետավորումը և կոնսերվացումը, վիտամինախոտալյուրի արտադրությունը։ Անբավարար են կերի պահեստարանների շինարարության, այդ թվում նաև շեֆական կազմակերպությունների կողմից կատարվող շինարարության տեմպերը։

Այս ամենը իջեցնում է կերերի արտադրության արդյունավետությունը, կերերի հատույցը։

Կերարտադրության ընդլայնման լուրջ նեցուկ պետք է դառնա կերակուլտուրաների ցանքերի կառուցվածքի կատարելագործումը՝ ոռոգելի հողերում միջանկյալ ցանքի, կրկնացանքի և խոզանացանքի լայն կիրառումով։ Սակայն հանրապետության շատ շրջաններում երկու բերքի ստացման հնարավորությունները անբավարար են իրացվում։

Ընկերնե՛ր։

Կերարտադրության ավելացման հսկայական ռեզերվներ կան մեր խոտհարքներում ու արոտավայրերում, որոնց տարածությունը հասնում է շուրջ 780 հազար հեկտարի։ Դա կազմում է օգտագործվող գյուղատնտեսական հողահանդակների 60 տոկոսը։ Հանրապետությունում արտադրվող տավարի ու ոչխարի մսի, կաթի ու բրդի կեսից ավելին ստացվում է գյուղատնտեսական անասունների արոտային պահպանության շրջանում։ Սակայն այդ կերահանդակների հնարավորությունները ևս առայժմ անբավարար են օգտագործվում։ Ըստ որում հարկ է արձանագրել, որ մարգագետնաարոտավայրային տնտեսությունը գյուղատնտեսական արտադրության հենց այն ճյուղն է, որտեղ ինտենսիվացումը ամենից քիչ է տեղ գտել։ Չեն արմատավորվում արոտաշրջանառությունները և անասունների փոփոխուն արածեցումներ, բարձիթողի վիճակում են կուլտուր-տեխնիկական աշխատանքները, հանքային և օրգանական պարարտանյութերը օգտագործվում են սահմանված նորմաներից զգալիորեն պակաս քանակությամբ։

Մարգագետինների և արոտավայրերի ռացիոնալ և արդյունավետ օգտագործմանը խանգարում է նաև այն, որ այնտեղ անթույլատրելի կերպով դանդաղ են կատարվում անասնապահների համար աշխատանքի ու կենցաղի համապատասխան պայմանների ստեղծման աշխատանքները, խիստ անբավարար վիճակում են ճանապարհները, փաստորեն բացակայում են հեռախոսն ու ռադիոկապը, ցածր է էլեկտրիֆիկացման մակարդակը։ Արոտավայրերում կոլտնտեսությունների ու սովխոզների ունեցած նույնիսկ սահմանափակ թվով արտադրական և կենցաղային օբյեկտներն էլ գտնվում են բարձիթողի վիճակում։

Ջրատնտեսական ու գյուղատնտեսական մարմինները շատ շրջաններում չեն ապահովում արոտավայրերի ջրարբիացման համակարգերի տեխնիկական պատշաճ խնամքը, դրանք ժամանակին չեն նախապատրաստում արոտային սեզոնին։ Եղեգնաձորի, Արթիկի, Աշտարակի, Շամշադինի և մի շարք այլ շրջաններում տարեցտարի ձախողվում են ցանցերի ու կառուցվածքների վերականգնման և նորոգման աշխատանքների ժամկետները։ Դրա հետևանքով խախտվում է արոտավայրերի նորմալ ջրամատակարարումը։

Շահագործման ցածր մակարդակը մեծապես պայմանավորված է նաև չմտածված նախագծային լուծումներով, շինարարական աշխատանքների ցածր որակով։

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը պետք է անհետաձգելի կերպով հնարավորություններ գտնեն կարճ ժամկետում վերակառուցելու արոտավայրերի ջրարբիացման համակարգերը։

Խոտհարքների, արոտավայրերի արմատական և մակերեսային բարելավման աշխատանքները ոչ կոմպլեքսայնորեն, չհամաձայնեցված կերպով կատարվելու հետևանքով ներդրվող միջոցները չեն տալիս համապատասխան արդյունքը, այդ կերահանդակների մթերատվությունը փաստորեն չի աճում։

Բնական կերահանդակների բարելավման տեմպերի արագացմանը և որակի բարձրացմանը նկատելիորեն խանգարում է լեռնային ռելիեֆի պայմաններին հարմարեցված մեքենաների ու ագրեգատների համակազմի սահմանափակությունը։ Գործին մեծ վնաս է հասցնում գյուղատնտեսության մինիստրության, Հայգյուղտնտտեխնիկայի և «Հայգյուղմեքենայացում» գիտաարտադրական միավորման չհամաձայնեցված աշխատանքը նորագույն մեքենաների ու



մեխանիզմների լայն արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների և քար հավաքող, հարթեցնող, պարարտանյութեր ու հերբիցիդներ կիրառող մեքենայական համակարգերի մշակման ու կատարելագործման ուղղությամբ։

Կուսակցական կոմիտեները, սովետական ու տնտեսական մարմինները պետք է մեծ պատասխանատվությամբ վերաբերվեն մարգագետնաարոտավայրային տնտեսության բարելավման հարցերին, հասնեն եղած հնարավորությունների առավելագույն օգտագործման։ Դժվար է գերագնահատել այդ պրոբլեմի բացառիկ կարևոր նշանակությունը նաև բնապահպանական առումով։

Խոսելով կերարտադրության պրոբլեմի մասին, ուզում ենք մեկ անգամ էլ նշել, որ մեր մերձավորագույն խնդիրն է կերակուտակումների միջին տարեկան ծավալը հասցնել 3 միլիոն տոննայի, շեշտակի բարելավել կերերի որակն ու օգտագործումը։ Դրանով կապահովվի անասնապահության մթերատվության հետագա բարձրացումը, հնարավորություն կընձեռվի կովերի միջին կաթնատվությունը հասցնել 3.000—3.500 կիլոգրամի, բարձրացնել հանձնվող անասունների քաշային կոնդիցիաները։

Մեծ է քիմիացման դերը մելիորացված հողերի բերքատվության բարձրացման գործում։ Կոլտնտեսություններում և սովխոզներում մշտապես աճում է հանքային պարարտանյութերի կիրառումը։ Սակայն դեռևս քիչ չեն նաև այն կոլտնտեսություններն ու սովխոզները, ուր խախտվում են հողին պարարտանյութ տալու սահմանված նորմաներն ու ժամկետները, դրա փոխադրման ու պահպանման կանոնները, որ հանգեցնում է մեծ կորուստների։ Հանքային պարարտանյութերը շատ դեպքում հողին տրվում են առանց ագրոտեխնիկական քարտերի պահանջները հաշվի առնելու, ընդ որում այդ քարտերն էլ կանոնավոր չեն վերանայվում։

«Հայգյուղքիմիա» արտադրական գիտական միավորումը հիմնականում ապահովում է հանրապետության գյուղատնտեսությանը հանքային պարարտանյութերի և այլ քիմիկատների մատակարարումը։ Սակայն, դրա հետ մեկտեղ, միավորումը անբավարար է զբաղվում քիմիացման միջոցների արդյունավետ օգտագործման հարցերով, թույլ է վերահսկում իր ենթակա կազմակերպությունների, ջոկատների և օղակների գործունեությունը։

Գյուղատնտեսության և պտղաբանջարեղենի տնտեսության մինիստրությունները պետք է գործնական միջոցներ ձեռնարկեն, որպեսզի մելիորացված հողեր ունեցող տնտեսությունները լիովին ապահովվեն հանքային պարարտանյութերով, պեստիցիդներով և այլ քիմիկատներով, խիստ վերահսկողություն կազմակերպեն հիշյալ միջոցների արդյունավետ օգտագործման նկատմամբ։

Հանրահայտ է, որ ոռոգելի հողերն ավելի զգայուն են պարարտացման նկատմամբ։ Գիտությունը ապացուցել է, որ, օրինակ, պարարտանյութ կիրառելու դեպքում, բայց առանց ոռոգման, եգիպտացորենի բերքատվությունը բարձրանում է ընդամենը 24 տոկոսով, միայն ոռոգումը առանց պարարտանյութերի, բերքատվությունը ավելացնում է 106 տոկոսով, իսկ պարարտանյութերի և ոռոգման միաժամանակ կիրառումը բերքատվության աճը հասցնում է 300 տոկոսի։ Սա նաև հաստատվում է մեր տնտեսությունների մեծ մասի աշխատանքի արդյունքներով։

Սակայն բերքատվության բարձրացման այս գործոնը դեռևս ամենուրեք չէ, որ կիրառվում է։ Ոռոգելի հողերը ինչպես հանքային, այնպես էլ օրգանական պարարտանյութերով պետք է ապահովվեն առաջին հերթին և լիովին։ Պատճառաբանությունները, թե պարարտանյութերի քանակն անբավարար է, տվյալ դեպքում տեղին չեն։

Անհրաժեշտ է արդյունավետ կիրառել հատկացվող ամբողջ հանքային պարարտանյութը, ինչպես նաև շեշտակիորեն մեծացնել հողերի արգավանդության բարձրացման այնպիսի արժեքավոր ռեզերվի օգտագործման ծավալները, ինչպիսին օրգանական պարարտանյութն է։

Ընկերնե՛ր։

Հանրապետությունում դեռևս չլուծված է մնում ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործման պրոբլեմը։ Շրջանների և տնտեսությունների մեծ մասում ջրի

տույց ստանալ շրջանառության մեջ դրված հողահանդակներից։ Նման դրության գլխավոր պատճառներից մեկը ավանների շինարարության խիստ ետ մնալն է։ «Հայգլխջրշինը» այդ նպատակներին տարեկան հատկացնում է միանգամայն անբավարար միջոցներ, որոնք էլ վատ են իրացվում։

Բաղրամյանի շրջանի զարգացման վերաբերյալ կայացվել են մինիստրությունների ու գերատեսչությունների մի շարք որոշումներ, հրամաններ, մշակվել աշխատանքների համատեղ գրաֆիկներ, սիստեմատիկ կերպով գումարվում են խորհրդակցություններ։ Սակայն հետևողական, նպատակասլաց, փոխհամաձայնեցված աշխատանքի բացակայությունը, առանձին ղեկավարների անպատասխանատվությունը թույլ չեն տալիս հասնելու շոշափելի արդյունքների։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը պետք է ընդհուպ զբաղվի շրջանի հարցերով և հատուկ վերահսկողության տակ վերցնի այնտեղ կատարվող աշխատանքների ընթացքը։

Ընկերնե՛ր։

Գյուղատնտեսական արտադրության և հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգացումը աններևակայելի է առանց ջրատնտեսական ծավալուն շինարարության և առկա ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման։ Վերջին տարիներս այդ կարևոր բնագավառում քիչ բան չի արվել։ Այդ մասին արդեն ասվեց։

Ներկայումս Հայաստանի տարածքով անցնող բոլոր գետերի հոսքը ձեռնարկված միջոցառումների շնորհիվ ամռան շրջանում գրեթե լրիվին կարգավորվում և օգտագործվում է։ Ուստի նոր ջրամբարների կառուցումը և եղածների վերակառուցումը բացառիկ կարևոր խնդիր է։

Եթե մինչև 1966 թվականի հունվարի 1-ը Հայաստանում գործում էր ոռոգման ընդամենը հինգ խոշոր ջրամբար՝ 112,6 միլիոն խորանարդ մետր ընդհանուր ծավալով, ապա 1984 թվականի հունվարի 1-ի դրությամբ գործող ջրամբարների ընդհանուր ծավալը կազմում էր 1.060 միլիոն խորանարդ մետր, իսկ օգտակար քանակը՝ 970 միլիոն խորանարդ մետր։ Հանրապետությունում վերակառուցվում են արդեն ստեղծված ջրամբարները, նպատակ ունենալով բարձրացնել դրանց կայունությունը և նվազեցնել կորուստները։ Այդ աշխատանքները հարկավոր է ընդլայնել և արագացնել։

Խոշոր ջրամբարներից զատ, մենք պետք է կառուցենք նաև մեծ քանակությամբ փոքր ջրամբարներ՝ մեկից մինչև հինգ միլիոն խորանարդ մետր ծավալով։ Վերջին տարիներս տարբեր շրջաններում այդպիսիք կառուցվել են, և շահագործման փորձը ցույց է տալիս դրանց արդյունավետությունը։

Մեծ քանակությամբ փոքր ջրամբարների կառուցումը հնարավորություն կընձեռի առավել լրիվ օգտագործելու մակերեսային ջրահոսքը, այն կուտակելու առավել բարձր կետերում, մեծացնելու ոռոգելի հողերի և ջրարբիացվող հողազանգվածների ջրապահովումը, հոսքաջրերը կուտակելու գոյություն ունեցող ոռոգման գոտիներում, գյուղատնտեսական հողահանդակներն ու ժողովրդատնտեսական օբյեկտները պաշտպանելու ողողումներից ու հեղեղներից։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնարարությամբ փոքր ջրամբարների ստեղծման առաջարկություններ են մշակվել առայժմ 610 միլիոն խորանարդ մետր ջրի կուտակման համար։ Առաջնահերթ կառուցման համար նշված է 108 ջրամբար, որոնք ստեղծվելու են հանրապետության բոլոր շրջաններում։ Այդ ջրամբարների ստեղծումը պետք է ավարտվի մինչև 1990 թվականը։ Դրանց շինարարության գործում պետք է շրջաններին շեֆական օգնություն ցույց տան ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատավորական կոլեկտիվները։

Մենք պետք է ընդլայնենք նաև փոքր ոռոգման մասշտաբները։

Վերջին տարիներս հանրապետությունում որոշ գործ է արվել գոյություն ունեցող ոռոգման ցանցը վերակառուցելու, գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգման առաջադիմական եղանակներ արմատավորելու համար։

Սակայն արվածը մեզ առայժմ չի կարող բավարարել։ Գոյություն ունե-



ցող ոռոգման համակարգերի մի զգալի մասը չի համապատասխանում ժամանակակից տեխնիկական պահանջներին։

Ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ասպարեզում էական թերություն է գիշերային ոռոգման նշանակության անտեսումը։ Գիշերային ջրումները թույլ են տալիս ավելի ռացիոնալ օգտագործել ջուրը, մեղմացնում են ջրի օգտագործման լարված գրաֆիկը։ Չէ՞ որ ոռոգման ցանցերի թողունակությունը և պոմպակայանների աշխատանքի ռեժիմը նկատի են առնված վեգետացիոն ամբողջ ժամանակաշրջանում թե՛ գիշերը և թե ցերեկը գործելու համար։

Այս իմաստով ուշագրավ է Սիսիանի շրջանի Դարբասի կոլտնտեսության փորձը։ Այստեղ կուսբյուրոյի նախաձեռնությամբ հատուկ բրիգադ է կազմակերպվել գիշերային ոռոգման համար և, ինչպես նշվեց կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում, այն գոհացուցիչ արդյունքներ է տվել։

Կուսշրջկոմները, շրջգործկոմները և շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդները պետք է բարձրացնեն գյուղատնտեսական ու ջրատնտեսական կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների պատասխանատվությունը ոռոգման ջրի խնայողական և ռացիոնալ օգտագործման համար, բոլոր տնտեսություններում ապահովելով նաև գիշերային ջրման անցկացումը։

Մենք պետք է ամենավճռական միջոցները ձեռնարկենք արագացնելու և ընդլայնելու ջրման տեխնիկայի և ոռոգման առաջադիմական եղանակների ներդրման մասշտաբները։ Տվյալ հարցի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի հայտնի որոշման ընդունումից հետո մի շարք շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական և ջրատնտեսական կազմակերպություններ որոշակի դրական աշխատանք են կատարել։

Այնուհանդերձ, ոռոգման առաջավոր մեթոդների արմատավորման տեմպերը դեռևս դանդաղ են։ Դրանք ընդգրկում են ոռոգվող հողերի ընդամենը մեկ հինգերորդ մասը։ Այս կարևոր գործին բավարար ուշադրություն չի նվիրվում Մասիսի, Գորիսի, Ամասիայի և մի շարք այլ շրջաններում։

Հարկ է ուշադրությունը սևեռել մի կարևոր հարցի վրա ևս։ Խոսքը վերաբերում է կոլտնտեսությունների ու սովխոզների փոխհարաբերություններին իրենց սպասարկող կազմակերպությունների և ձեռնարկությունների հետ։ Ամենուրեք չէ, որ մենք հասել ենք այնպիսի դրության, երբ ջրատնտեսական մարմինների, գյուղտեխնիկայի, գյուղքիմիայի ստորաբաժանումները պատասխանատվություն են զգում գյուղատնտեսական արտադրության վերջնական արդյունքի, բերքի համար։

Ընկերնե՛ր։

Մակերևութային ջրերի օգտագործման հետ միասին ժողովրդական տնտեսության ճյուղերի հետագա զարգացման գործում կարևոր նշանակություն ունի հանրապետության ստորգետնյա ջրերի օգտագործումը։ Դրանց մեծ մասը գտնվում է Արարատյան դաշտում։ Սակայն Արարատյան դաշտի ստորգետնյա ջրերը, ցավոք, օգտագործվում են ոչ լրիվ և ոչ ռացիոնալ կերպով։

Նույնն է պատկերը նաև Սևանի ավազանի և հանրապետության այլ շրջանների ստորգետնյա ջրերի օգտագործման հարցում։

Հանրապետության պետպլանը պետք է համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ մոտ ժամանակներս պարզի և ճշգրտի ստորգետնյա ջրերի շահագործական պաշարները, մշակի ժողովրդական տնտեսության կարիքների համար դրանց օգտագործման ընդհանուր սխեման, մշակված սխեմային համապատասխան ապահովի նախագծանախահաշվային փաստաթղթերի կազմումը և գյուղատնտեսական արտադրության ու ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի կարիքների համար ստորգետնյա ջրերի առավելագույն օգտագործման աշխատանքների կատարումը։

Մելիորացման լայն ծրագիրը, նախանշված աշխատանքների բարդու-

թյունն ու աշխատատարությունը պահանջում են վճռականորեն բարելավել մելիորատիվ շինարարության կազմակերպումը, բարձրացնել դրա ինդուստրացման մակարդակը, է՛լ ավելի ամրապնդել արտադրական բազան,— ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Հանրապետությունում շատ բան է արվել ջրատնտեսական կազմակերպությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ։ Մի շարք միջոցներ են ձեռնարկվել կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու, շինմոնտաժային աշխատանքների որակը բարելավելու համար։ Արժանի ճանաչում է ստացել «Հայգլխջրշինի» մելիորատորների կոլեկտիվը, որը մեծ ծավալի աշխատանքներ է կատարում, ներդնում աշխատանքի առաջավոր մեթոդներ։

Միաժամանակ հարկ է ասել, որ մելիորատիվ շինարարության նպատակով հանրապետությունում ներդրվող միջոցների արդյունավետությունը առայժմ բարձր չէ։

Ջրատնտեսական շինարարության մեջ կատարվող կապիտալ ներդրումների ցածր արդյունավետության պատճառներից մեկը, ինչպես արդեն ասվեց, կուլտուր-տեխնիկական աշխատանքների կատարման և սովխոզային նոր ավանների շինարարության զգալի ետ մնալն է, մելիորացված հողերում գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերքատվությունը, ոռոգման առաջադիմական եղանակների կիրառման թերագնահատումը և այլն։ Ջրատնտեսական շինարարության մեջ կապիտալ ներդրումների արդյունավետության վրա բացասաբար է անդրադառնում միջոցների փոշեցրումը միաժամանակ կառուցվող մեծաթիվ օբյեկտներում, ինչը հանգեցնում է շինարարության նորմատիվ ժամկետների խախտման և կապիտալ ներդրումների սառեցման, անավարտ շինարարության ծավալների մեծացման, իջեցնում է տեխնիկայի, աշխատանքային և նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը։

«Հայգլխջրշինը» բարդ և պատասխանատու խնդիրներ պետք է լուծի հեռանկարում։ Դա պահանջում է մշտապես բարելավել արտադրության կազմակերպումը, նախագծման գործը, ամրապնդել նյութատեխնիկական բազան։

Օբյեկտը, ինչպես հայտնի է, սկսվում է նախագծից։ Այն բանից, թե որքան բարեխիղճ են աշխատել նախագծողները, որքան գիտականորեն հիմնավորված ու խորն են նրանց լուծումները, մեծապես կախված է նաև մելիորացման արդյունավետությունը։

Սակայն այս կարևոր գործում մենք լուրջ թերություններ ունենք։ Առայժմ բոլոր նախագծերը չէ, որ մշակվում են հարկ եղած մակարդակով։ Դրանցում հաճախ թույլ են տրվում կոպիտ սխալներ ու վրիպումներ, որոնց շտկումը հանգեցնում է օբյեկտի նախահաշվային արժեքի մեծացման։ Առանձնապես ցածր է ինժեներաերկրաբանական հետազոտությունների որակը, որի հետևանքով արդեն շինարարության ընթացքում հարկ է լինում փոխել ավելի վաղ կայացրած լուծումները։

Մենք դեռևս չենք հասել այնպիսի դրության, որ կուլտուր-տեխնիկական աշխատանքների նախագծումն ու անցկացումը նախորդեն ոռոգման համակարգերի նախագծմանը։ Այս պայմանի խախտումը հանգեցնում է նրան, որ ներտնտեսային մի շարք օբյեկտներում կուլտուր-տեխնիկական աշխատանքների անցկացումից հետո հարկ է լինում կառուցված ներտնտեսային ցանցը նորից նախագծել ու կառուցել, որի համար պահանջվում են լրացուցիչ կապիտալ ներդրումներ։

Ջրատնտեսական շինարարության մեջ կապիտալ ներդրումների ավելացումը և բուն շինարարության մասշտաբների աճը պահանջում են զգալիորեն մեծացնել մելիորատիվ համակարգերի ու ջրատնտեսական օբյեկտների նախագծումով զբաղվող նախագծային ինստիտուտների կարողությունները։

Մինիստրների խորհուրդը պետք է հանգամանորեն խորամուխ լինի այդ հարցին և մի շարք արմատական միջոցներ ձեռնարկի բարելավելու նախա-



գծային գործը, ամրապնդելու նախագծային ինստիտուտների նյութատեխնիկական բազան։

Աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը պետք է լինի ջրատնտեսական շինարարության որակի համակողմանի բարձրացումը։

Կուսշրջկոմները պարտավոր են կազմակերպվածություն, կարգուկանոն հաստատել շինարարական արտադրության բոլոր օղակներում։ Անորակ շինարարության յուրաքանչյուր դեպք պետք է քննարկման առարկա դարձվի որպես արտակարգ երևույթ, իսկ մեղավորները ենթարկվեն խիստ պատասխանատվության։ Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է հատկապես հոգ տանեն գիտության և տեխնիկայի նվաճումները արտադրության մեջ արագորեն ներդնելու մասին։

Ոռոգելի հողագործության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման, ոռոգման ջրի տնտեսման, իրիգացիոն էրոզիայի կանխման համար անհրաժեշտ է ամենուրեք և լայնորեն ներդնել ոռոգման առաջադեմ ձևեր, մեքենայացման ու ավտոմատացման միջոցներ։ Առաջիկայում մեծ աշխատանքներ պետք է կատարվեն պոմպակայանների և պոմպավոր հորերի, ջրաբաշխման ու ոռոգման գործի ավտոմատացման ուղղությամբ, կիրառելով միկրոպրոցեսորային տեխնիկա՝ ըստ ագրոպարամետրերի։

Անհրաժեշտ է աշխատանքներ տանել հեռուստազոնդավորման մեթոդների ստեղծման ու ներդրման ուղղությամբ, այդ թվում օդալուսանկարահանումների օգտագործումով, որը թույլ կտա օպերատիվ ինֆորմացիա ստանալ ջրային ռեժիմը վերահսկելու, ոռոգման և ցամաքուրդային համակարգերի սպասարկումն ու նորոգումը ժամանակին պլանավորելու համար։

Անհրաժեշտ է արագացնել քարքարոտ և աղակալած հողերի յուրացման նոր մեքենաների կոմպլեքսի ներդրումը՝ կուլտուր-տեխնիկական աշխատանքների իրականացման համար։ Լայն կիրառում պետք է գտնի լազերային տեխնիկան ջրանցքներ գցող և դաշտեր հարթեցնող մեքենաների աշխատանքի ավտոմատացված կառավարման համար։

Ոռոգելի հողագործությունը պետք է դառնա լավ պլանավորվող և կառավարվող արտադրական պրոցես։

Հանրապետության ոռոգելի հողագործության զարգացումը, մելիորատիվ և ջրատնտեսական շինարարության լայն ծավալումը, որը իրականացվում է երկրաբանական ու տեղագրական խիստ դժվարին պայմաններում, գիտության առջև դնում են անհետաձգելի լուծում պահանջող նոր բարդ հարցեր։ Գիտական հետազոտությունները նոր փուլում պետք է նպատակամղված լինեն մելիորացման և ջրային տնտեսության բնագավառի ավելի ու ավելի բարդացող խնդիրների լուծմանը։ Այդ հետազոտությունները պետք է անցկացվեն ըստ նպատակային կոմպլեքսային ծրագրերի, գործի մեջ ներգրավելով մի շարք ճյուղային գիտական ու նախագծային կազմակերպությունների, հանրապետության գիտությունների ակադեմիայի ինստիտուտների և բարձրագույն ուսումնական հաստատությունների գիտնականներին ու մասնագետներին։

Պետք է հատուկ ուշադրություն նվիրվի մակերևութային ու ստորգետնյա ջրերի ռեժիմի, քանակի ու որակի, ջրամբարներում բնական պրոցեսների ընթացքի, շրջակա միջավայրի բուսական ու կենդանական աշխարհի վրա ջրատնտեսական խոշոր միջոցառումների ազդեցության կանխատեսմանն ու հնարավոր բացասական հետևանքների կանխմանը։ Նոր լուծումներ պետք է որոնել այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են՝ ջրերի կոմպլեքսային, ռացիոնալ օգտագործումն ու պահպանումը, ստորգետնյա ջրերի հայտնաբերումն ու արտաբերումը, ցամաքեցման կատարյալ համակարգերի, սպառման նորմաների և ոռոգման լավագույն ռեժիմների, ջրամբարների թասերի համար մաշչելի նյութերից հականերծծող ծածկույթների ստեղծումը, աղակալած հողերի աղազերծման և գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավման առավել արդյունավետ եղանակների, թեք լանջերի ոռոգման եղանակների և դրա մեքենայացման միջոցների մշակումը և այլն։ Կպահանջվեն նաև նոր նյութեր,

բացահայտելու մելիորացման դերն ու նշանակությունը պարենային ծրագրի կատարման գործում։

Պլենումի հաստատած՝ հողերի մելիորացման լայնամասշտաբ ծրագիրը կուսակցությունը դիտում է որպես համապետական, համաժողովրդական գործ։ Հողը մեր ամենամեծ հարստությունն է։ Այն օժտված է հիանալի հատկությամբ՝ ճիշտ օգտագործման դեպքում չի մաշվում, դուրս չի գալիս գյուղատնտեսական շրջանառությունից, ինչպես արտադրության մյուս միջոցները, այլ մշտապես բարելավվում է, բարձրացնելով իր արտադրողական հատկությունները։ Ուրեմն՝ պահպանենք և խելամիտ, ռացիոնալ օգտագործենք մեր հողը։

Ընկերնե՛ր։

Մինչև տարվա վերջը մնացել է մի քանի շաբաթ։ Այժմ մենք պետք է ուշի-ուշով վերլուծենք անցած տասը ամսում կատարված աշխատանքը, քննադատաբար գնահատենք արդյունքները և միջոցներ ձեռնարկենք, որպեսզի հաջողությամբ ավարտենք տնտեսական տարին, կատարենք ու գերակատարենք պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, լավ հիմք դնենք եկող տարում տնտեսությունների տնտեսական ու սոցիալական զարգացման համար։

Այժմ գյուղատնտեսության աշխատողների համար առանձնապես կարևոր է կազմակերպված անցկացնել անասունների ու թռչունների ձմեռումը, բարելավել դրանց խնամքն ու կերակրումը, կերային արտադրամասերի աշխատանքը, հասնել այն բանին, որ ֆերմաների ու համալիրների բոլոր աշխատողները ամենայն բարեխղճությամբ կատարեն իրենց պարտականությունները, բարձր մակարդակի վրա պահեն անասունների մթերատվությունը։

Հատուկ նշանակություն է ձեռք բերում մարդկանց հետ կատարվող աշխատանքը, նրանց աշխատանքի և ամբողջ արտադրության կազմակերպման կատարելագործումը անմիջականորեն ֆերմաներում։

Այժմ լարված ժամանակաշրջան է ոչ միայն ֆերմաներում, այլև աշխատանքի բոլոր տեղամասերում, կոլտնտեսություններում, սովխոզներում, միջտնտեսային ձեռնարկություններում։ Կարևորագույն խնդիր է աշնան գյուղատնտեսական աշխատանքների կազմակերպված ավարտումը, սերմացուի, պարարտանյութերի, տեխնիկայի, նյութատեխնիկական այն միջոցների մանրակրկիտ նախապատրաստումը, որ անհրաժեշտ են գարնան դաշտային աշխատանքները հաջողությամբ անցկացնելու, տասնմեկերորդ հնգամյակի եզրափակիչ տարվա բերքի հուսալի հիմքը դնելու համար։

Թույլ տվեք, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, կուսակցության Կենտրոնական կոմիտեին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացնել, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը, կոմունիստները, աշխատավորները ամեն ինչ կանեն ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի հոկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրները կատարելու համար, իրենց բոլոր ջանքերը կգործադրեն հաջողությամբ ավարտելու տասնմեկերորդ հնգամյակը, արժանավայել կերպով կդիմավորեն հարազատ լենինյան կուսակցության XXVII համագումարը։ (Բուռն ծափահարություններ):

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՆԵՐԱԾԱԿԱՆ ԽՈՍՔԸ ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 175-ԱՄՅԱԿԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀՈԲԵԼՅԱՆԱԿԱՆ ԵՐԵԿՈՅՈՒՄ

Թանկագին ընկերնե՛ր։

Այսօր մենք նշում ենք Հայաստանի պանծալի զավակներից մեկի՝ Խաչատուր Աբովյանի ծննդյան 175-ամյա հոբելյանը։

Գրող, լուսավորիչ-դեմոկրատ, ժողովուրդների բարեկամության կրքոտ ջատագով Աբովյանը իր սխրալից կյանքով ու ստեղծագործությամբ, բոցաշունչ հայրենասիրությամբ, հայրենիքին մատուցած անձնուրաց ծառայությամբ կանգնեց այն մեծերի շարքում, որոնց պատմական առաքելություն վիճակվեց բարու և հումանիզմի իդեալների հուրը վառել աշխարհի ոգորումների բովից, հարթել ժողովրդական մասսաների զարթոնքի շավիղները, հաստատել հոգեվոր առաջընթացի նոր ուղենիշներ։

Պատմության ալիքը վեր հանեց Աբովյանի հսկա կերպարը ժողովրդի պայքարի ու ազգային զարթոնքի բախտորոշ պահին։ Հայ ժողովուրդը, ինչպես Ավետիք Իսահակյանն է գրել, ստրկության, խավարի դառն ու դժվարին դարերից 19-րդ դարը հասավ՝ դեռևս չգիտակցած իր խնդիրները։ Մե՛կը պիտի ծնվեր ժողովրդի հոգուց՝ մի մարգարե, մի բանաստեղծ, լուսավորիչ, որը ժողովրդին տար վերածնունդի իմաստուն պատգամներ, հրեղեն խոսքերով խանդավառեր, քնից արթնացներ նրան, ամրապնդեր նրա կամքը անձնազոհ հայրենասիրությամբ, լուսավորեր նրա ուղին դեպի ինքնագիտակցություն, ընդվզում, ազատություն։

Հենց Խաչատուր Աբովյանն էր, որ իրականացրեց այդ մեծ առաքելությունը, անգնահատելի դեր խաղաց մեր ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի ծավալման, նրա մշակույթի, հասարակական-քաղաքական մտքի, լուսավորության զարգացման գործում։

Լինելով ռեալիստ-նորարար, առաջադեմ աշխարհայացքի տեր, Աբովյանն ամբողջ կյանքում անձնվիրաբար, իր մեծ նպատակի հստակ գիտակցմամբ դնում էր հայ նոր գրականության, ազգային դասական ոճի հիմքերը, կատարելագործում գրական ժանրերը՝ հենվելով ժողովրդական բազմադարյան էպոսի, Մովսես Խորենացու, Եղիշեի, Գրիգոր Նարեկացու, Ֆրիկի ժառանգության հզոր արմատների վրա, ռուս և համաշխարհային գրականության փորձի, գեղարվեստական մշակույթի անխախտ հիմքի՝ ժողովրդայնության վրա։

Աբովյանը գրեց ժողովրդի համար, ժողովրդի մասին, ժողովրդի լեզվով։ Գրել ժողովրդի համար, ժողովրդի կյանքի մասին՝ Աբովյանի համար ամենից առաջ նշանակում էր անդրադառնալ ժամանակի այն հրատապ պրոբլեմներին, որոնք հուզում էին մասսաներին, նշանակում էր վեր հանել այն խնդիրները, որոնք սերտորեն առնչվում էին ազգի ներկա և գալիք ճակատագրին, առավելագույն ճշմարտացիությամբ պատկերել իրականությունը, արտահայտել ժո-

ղովրդի ոգին, հոգեբանությունը, տառապանքներն ու տենչանքները, լուսավորել նրան, բոցավառել նրա հոգին ազգային ազատագրության ու վերածննդի վեհ իղձերով։

Ժողովրդին հասկանալի լեզվով գրելը Աբովյանի համար ոչ միայն կարևոր ստեղծագործական նպատակ էր, այլև սոցիալական ու քաղաքական վիթխարի նշանակության խնդիր՝ բավարարել ժողովրդի հոգևոր պահանջմունքները։ Ժողովրդի երգիչ, նրա պայքարի գաղափարախոս կարող էր լինել այն գրողը, որը գրում էր մասսաների կենդանի լեզվով, խոսում նրանց սրտի իղձերի, ձգտումների լեզվով, ժողովրդական խոսքի անսպառ պատկերային հարստությունների, բանահյուսության, էպոսի լեզվով։ Աբովյանի որդեգրած աշխարհաբարը դարձավ հասարակական, մշակութային ու գիտական առաջընթացի հզոր գործոն, լեզվական կուլտուրայի ուղենիշ հայ գրողների հաջորդ սերունդների համար։

Այդ ամենի մարմնացումը, շարունակում է ընկ. Կ. Դեմիրճյանը, Աբովյանի բարձրագույն ստեղծագործական նվաճումը, գրական գործունեության թագն ու պսակը դարձավ «Վերք Հայաստանի»։ Գրողի սրտի կրակից ու ցավից ծնված այդ գիրքը մի հուզաթաթավ ասք է ժողովրդի տառապալից կյանքի մաքառման մասին, նրա ազատատենչ ոգու, ուժի ու տոկունության դրսևորումն է, հայ իրականության յուրօրինակ հանրագիտարանը։ Խոր հումանիզմով ու հայրենասիրությամբ տոգորված այդ վեպը լայնաշունչ էպիկական թափով պատմում է հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարթոնքի մասին, պատկերում նրա պայքարը հանուն ազատության, հանուն բռնատիրության լծից ազատագրվելու, արտահայտում Ռուսաստանին միանալու, իր բախտը ընդմիշտ ռուս մեծ ժողովրդի հետ կապելու նրա ձգտումը։

«Վերք Հայաստանի» հայ և ռուս ժողովուրդների դարավոր եղբայրության հոյակերտ գրական հուշարձան է։ Աբովյանը, ինչպես և հայ ազատագրական շարժման առավել հեռատես գործիչները, հենց Ռուսաստանի հետ էին կապում հայրենիքի փրկության հույսը։ Ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմները ցույց տվեցին, թե այդ գաղափարներն ինչպիսի՜ ջերմ արձագանք էին գտել հայ ժողովրդի մեջ, որի ծոցից ելած աշխարհազորայինները ռուս զինվորների հետ կողք-կողքի, անձնվիրաբար ու խիզախորեն մարտնչեցին վայրագ ասպատակիչների դեմ։ Դա հերոսական պոռթկումն էր մի ժողովրդի, որը կատարել էր իր պատմական ընտրությունը։

Աբովյանը առաջիններից էր, որ գնահատեց Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման առաջադիմական մեծ նշանակությունը։ Այդ ժամանակ էր, որ նա, արտահայտելով հայ ժողովրդի նվիրական զգացմունքները, գրեց իր սրտաբուխ, իմաստուն խոսքերը, որոնք հավերժ բարեկամության ու եղբայրության սրբազան պատգամ դարձան սերունդների համար. «Օրհնվի էն սհաթը, որ ռսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհ մտավ... Ռուս անունը պետք է մեզ համար լինի սուրբ, ինչպես և նրա արյունը, որով մենք ազատվել ենք ընդմիշտ»։

«Վերք Հայաստանի» որպես «հայրենասիրության մի գործող հրաբուխ», իր անկեղծ կրակներով բոցբոցեց հարյուր հազարավորների սրտերը։ Պարզ դարձավ, որ բոցավառվել է հոգևոր վերածնության անշեջ ջահը, ծնվել այն ստեղծագործությունը, որը դեռ երկար պիտի ներազդի հայ հասարակության վրա, ոգեշնչի, դաստիարակի մարդկանց, հայրենիքի ջերմ սիրով հրավառի նրանց սրտերը։ «...Վերջին օրերս շատ եմ ներշնչված նրանով,— գրել է Ստեփան Շահումյանը։— Որքա՜ն հրաշալի բան է, որքա՜ն սրբազան ոգևորությամբ է լցվում կարդացողի սիրտը»։ Հիրավի, վեպը ոգևորել է մեր ժողովրդի սերունդներին։ Աբովյանի հայրենասիրության դասերը նրանց առջև բացեցին հայրենիքին ծառայելու մեծ ճանապարհը, սովորեցրին գրողի սրտի վերքերով բուժել հայրենիքի վերքերը, մարտնչել նրա պայծառ գալիքի համար։

Աբովյանի ստեղծագործական ժառանգությունը հիացնում է բազմաժանրությամբ ու բազմակողմանիությամբ. վեպեր, պատմվածքներ, պոեմներ, բանաստեղծություններ, առակներ, հրապարակախոսություն, ազգագրական



ու պատմագիտական ուսումնասիրություններ, գեղարվեստական թարգմանություններ։ Նա կազմել է Հայաստանի տնտեսական ու հոգևոր կյանքի վերափոխության նախագծեր, ստեղծել դասագրքեր, գրի առել ժողովրդական պոեզիայի նմուշներ, նկարագրել հայկական գյուղի ընտանեկան սովորույթները, ծեսերը, կենցաղային նիստուկացը։ Լինելով ժողովուրդների մերձեցման ու բարեկամության, նրանց մշակույթների համագործակցության ջատագով, գրողը մեծ ուշադրություն է նվիրել վրացիների, ադրբեջանցիների, քրդերի կենսակերպին, ստեղծել Անդրկովկասի ժողովուրդների եղբայրության ամուր կապերն արտացոլող սքանչելի մի շարք գործեր։

Օգտակար լինել հարազատ ժողովրդին, ասում է ընկ. Կ. Դեմիրճյանը, անձնվիրաբար ծառայել նրա շահերին, պայքարել նրա երջանկության ու առաջադիմության համար՝ այս էր Աբովյանի կյանքի ու գործունեության գերագույն իմաստը։ Գրողը չէր կարող հաշտվել աշխատավոր ժողովրդի ծանր վիճակին։ Նա իր ռուս, վրացի, ադրբեջանցի առաջադեմ գրչեղբայրների հետ մեկտեղ քննադատում ու մերկացնում էր ցարիզմի բյուրոկրատական, չինովնիկական կառավարման սիստեմի կամայականությունները։ Նրա մտքերը աշխատավոր ժողովրդի վիճակը բարելավելու ուղիների վերաբերյալ առավել վառ արտացոլում գտան Հայաստանի տնտեսական կյանքը բարեփոխելու նախագծում, ուր ժողովրդի բարօրությունը նա կապում էր քաղաքական առաջադեմ վարչակարգի, գյուղացիության լուսավորության և գյուղատնտեսության մեջ մեքենայական արտադրության ներդրման հետ։ Այդ գաղափարների իրականացման գրավականն ու պարտադիր պայմանը գրողը համարում էր անխախտ եղբայրությունը ռուս մեծ ժողովրդի հետ։

Աբովյանը եղել է ժողովրդի ոգեշունչ Ուսուցիչը։ Լուսավորությունը նա դիտում էր որպես ժողովրդի հոգևոր ազատագրության ու վերածնության հիմնական ուղի։ Նրա մանկավարժական գործունեության հիմքում ընկած էին հասարակական բարօրության միանգամայն նոր ու առաջադեմ գաղափարներ։ Նա մշակեց տիրացուական, խրատախոսական սկզբունքներից զերծ իր մանկավարժական սիստեմը, միաժամանակ պայքար մղելով ժողովրդի գիտակցությունը մթագնող և նրա առաջընթացն արգելակող կրոնական նախապաշարումների ու խավարամոլության դեմ, առաջարկում էր կրթության գործում արմատավորել աշխատանքային ուսուցումը։ Կարևոր նշանակություն տալով ռուսաց լեզվին, Աբովյանը հատուկ ձեռնարկ ստեղծեց հայկական դպրոցներում ռուսերենը դասավանդելու համար։ Նրա «Նախաշավիղը», ուրիշ շատ ստեղծագործություններ ներթափանցված են դաստիարակչական վսեմ գաղափարներով՝ դառնալ հասարակությանը պիտանի մարդ, լինել բարի, վեհանձն, բարեխիղճ, տոկուն, աշխատասեր, լավատես, հայրենասեր։

Խաչատուր Աբովյանը էնցիկլոպեդիստ էր, իր ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկը, քաջատեղյակ՝ հայ, ռուս, համաշխարհային գրականությանն ու պատմությանը, լայն գիտելիքներ ուներ ընափիլիսոփայության, սոցիոլոգիայի, մանկավարժության, գեղագիտության, երաժշտության, կերպարվեստի և այլ բնագավառներում։

Պատանի հասակում Աբովյանը պրոֆեսոր Ֆրիդրիխ Պարրոտի հետ կատարեց իր նշանավոր վերելքը Արարատի գագաթը։ Հավանաբար, նա առաջիններից էր, որ ոտք դրեց վեհապանծ լեռան գագաթին, և առաջին հայ գրողը, որ այդքան բարձրից տեսավ հայրենիքի հեռաստանները, և ասես՝ նրա ճակատագիրը, ապագան, իր առաքելությունը։ Լեռան կատարից նա որպես մասունք վերցրեց մի սառցաբեկոր։ Վայրէջքի ընթացքում սառույցը հալվեց, դարձավ մի բուռ ջուր։ Բարձունքում ծնված այդ կենարար կաթիլներով ցողվեց և հայրենի հողում արմատակալեց այն շիվը, որը պիտի հասակ առներ, հզորանար, դառնար աբովյանական իմաստնության ու լուսավորչության հավերժական կաղնին։

«Ներկայումս ես մի՛ ցանկություն ունեմ՝ հայրենիքիս օգնության հասնել,— գրել է Աբովյանը Դորպատից վերադառնալու նախօրեին։— Ոչ մի բան չէր կարող ինձ սարսափեցնել առաջին քայլից. առավել ևս ա՛յժմ չի կարող ինձ

ոչ մի բան կասեցնել։ Ես հաստատապես որոշել եմ չխնայել նույնիսկ կյանքս»։

Եվ չխնայեց ու հանուն հայրենիքի պայքարեց մինչև կյանքի վերջին պահը։ Նրա հրաբորբոք հոգուց էր նաև, որ բոցավառվեցին Միքայել Նալբանդյանի, Ստեփան Շահումյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի, Հովհաննես Թումանյանի, Եղիշե Չարենցի, մեր ժողովրդի մյուս պանծալի զավակների սրտերը, Լենինի դրոշի ներքո, միասնական սովետական ընտանիքում նոր սոցիալիստական Հայաստանի կոմունիստական գալիքը կռող մարդկանց սրտերը։

175 տարի է անցել այն օրից, երբ քանաքեռցի Ավետիք Աբովյանի հարկի տակ ծնվեց նրա խաչատուր որդին։ Այդ ժամանակից ի վեր շատ բան է փոխվել աշխարհում. փոխվել է Հայաստանը, նրա ժողովուրդը, փոխվել է նաև Քանաքեռը, դառնալով սոցիալիստական Երևանի ծաղկուն թաղամասերից մեկը։ Բայց անփոփոխ է մնացել ժողովրդի սերը իր հանճարեղ զավակի հանդեպ։ Հեռանալով 19-րդ դարից, Աբովյանը ոտք դրեց մեր բուռն դարը, հավերժացավ ո՛չ որպես հուշարձան, այլ որպես կենդանի, անմահ Ուսուցիչ։ Եվ այսօր նրա ծննդյան կան տեղ գրավեց հարազատ ժողովրդի կյանքում։ Եկավ ու հավերժացավ ո՛չ որպես հուշարձան, այլ որպես կենդանի, անմահ Ուսուցիչ։ Եվ այսօր նրա ծաղբելյանը նշվում է իբրև մեծ, համաժողովրդական տոն, տոնը մեր նոր, ծաղկուն մշակույթի, որի խանձարուրի մոտ կանգնած էր նրա մեծ բարեփոխիչը՝ Խաչատուր Աբովյանը։

Անգնահատելի ժառանգություն է թողել մեզ Աբովյանը՝ հայրենասիրության, եղբայրության, լուսավորության, հայրենի մշակույթի անդուլ զարգացման ոգեշունչ և իմաստուն դասեր։

Անսահման թանկ են այդ դասերը մեզ համար։ Այսօր հետևել դրանց՝ կնշանակի անխոնջ, տքնաջան աշխատանքով բազմապատկել հայրենիքի նյութական ու հոգևոր հարստությունները, ավելի ու ավելի բարձրացնել ժողովրդի կուլտուրայի, կրթության մակարդակը, ապահովել գրականության և արվեստի հետագա բուռն ծաղկումը, մեր մշակույթի գանձարանը հարստացնել հոգևոր նորանոր արժեքներով։ Հենց այդպես մենք անմար կպահենք Խաչատուր Աբովյանի հիշատակը։

Խաչատուր Աբովյանի հոբելյանը, վերջում նշում է ընկ. Կ. Դեմիրճյանը, մեծ իրադարձություն դարձավ Սովետական Հայաստանի կյանքում, վերածվեց համաժողովրդական տոնի։ Պայծառ տոնի ուրախությունը մեզ հետ կիսելու, մեծ լուսավորիչ-գրողի հիշատակին հարգանքի տուրք մատուցելու համար ժամանել են եղբայրական հանրապետությունների պատվիրակություններ, նշանավոր գրողներ, բանաստեղծներ, գրականագետներ։

Դիմելով հյուրերին՝ նա ասում է.

Այս հանդիսություններին ձեր մասնակցությունը առանձնահատուկ նշանակություն է հաղորդում հոբելյանին, այն վերածում է ինտերնացիոնալ բարեկամության, սովետական բազմազգ մշակույթի իսկական տոնի։ Այն, որ մենք, ըստ մեզանում վաղուց ի վեր ընդունված ավանդույթի, համատեղ ենք նշում մեր ժողովուրդների պանծալի զավակների հոբելյանները, սովետների երկրի ժողովուրդների անխախտ միասնության ու բարեկամության, նրանց մշակույթների ավելի ու ավելի ամրապնդվող կապերի մի նոր պերճախոս վկայությունն է։ Սա մեր հարազատ կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության վառ դրսևորումներից մեկն է։

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության և Մինիստրների խորհրդի կողմից, հոբելյանական երեկոյի բոլոր մասնակիցների կողմից ընկ. Կ. Դեմիրճյանը ջերմորեն ողջունում է թանկագին հյուրերին, նրանց մաղթում քաջառողջություն, անձնական մեծ երջանկություն, ստեղծագործական նոր հաջողություններ։

---



# ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

**Լ. ՇԻՐԻՆՅԱՆ**

ՍՄԿԿ ՏԵՍԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ արդի փուլին բնորոշ է իրականության առավել խոր և բազմակողմանի ուսումնասիրությունը։ Դրա վառ վկայությունը հանդիսացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը, որը տվեց կուսակցության գաղափարախոսական գործունեության համակողմանի վերլուծությունը և նշեց զարգացած սոցիալիզմի շրջանում գաղափարախոսության ոլորտի հրատապ խնդիրները։

Կուսակցության ծրագրի նոր խմբագրությը կոչված է մշակելու դեպի կոմունիզմ կատարվող առաջընթացի այնպիսի ստրատեգիա, որը բացառում է ինչպես գործողությունների դանդաղաշարժությունը, այնպես և զարգացման պատմականորեն անհրաժեշտ աստիճանների անտեսումը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն մասնավորապես նշեց, որ «հարկավոր է... համատեսական պատշաճ հիմք ստեղծել» կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի համար։

Արդի պայմաններում առաջին պլան է մղվում հասուն սոցիալիզմի կոնցեպցիան, որը հետագա խորացման ու կոնկրետացման կարիք ունի։ Հանդես գալով ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի նախապատրաստման հանձնաժողովի նիստում, ընկեր Կ. Ու. Չեռնենկոն շեշտեց. «Գլխավորն այն է, որ պետք է ելնել նոր հասարակության սոցիալ-տնտեսական հասունության՝ մեր ձեռք բերած աստիճանի հստակ ըմբռնումից։ Կուսակցության վերջին տարիների փաստաթղթերում արված է սկզբունքային կարևորություն ունեցող այն հետևությունը, որ մենք գտնվում ենք պատմականորեն տևական ժամանակաշրջանի՝ զարգացած սոցիալիզմի էտապի, սկզբնամասում... Արդի պայմաններում մեր ծրագիրը պետք է լինի զարգացած սոցիալիզմի կատարելագործման ծրագիր, և հենց ըստ այդմ էլ տեղի է ունենում աստիճանական առաջընթացը դեպի կոմունիզմ»։

Հասկանալի է, որ սոցիալիստական հասարակության հետագա առաջընթացն անհնար է առանց գալիքի գիտականորեն հիմնավորված կանխատեսման։ Ամենևին էլ պատահական չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը նույն ելույթում նշեց, որ ծրագրի մեջ հստակորեն կպատկերվեն այն հեռանկարները, վերջնական նպատակները, որոնց մենք ձգտում ենք։ Այն պետք է «ցույց տա դեպի ապագա տանող ուղին, բաց անի սոցիալական նոր հորիզոններ»։

Ինքնին հասկանալի է, որ հարցադրման տրամաբանությունը պահանջում է հստակորեն որոշել կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլի սահմանները։ Կարող է թվալ, թե առաջադրված խնդիրը հեռու է տեսության արդի պահանջներից։ Սակայն դա այդպես չէ։ Մեր կարծիքով, մեթոդաբանական ելակետային մեծ նշանակություն ունի տեսության ընդհանուր հարցերը նախապես լուծելու լենինյան ավանդույթի կենսունակության կարևորումը։ Պրակ-



digitised by A.R.A.R.@

վորությունից: Այդ կապակցությամբ նա գրում է. «Վերաճման առաջին էտապը դա սոցիալիզմի տարրերի վերաճումն է կոմունիզմի տարրերի, որը տեղի է ունենում մինչև սոցիալիստական փուլի ավարտը: Երկրորդը՝ դա ֆորմացիայի մի փուլի թռիչքաձև (անմիջական) անցումն է մյուսին, բարձրագույնին» (Նույն տեղը, էջ 166): Բանն այն է, որ սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանի յուրաքանչյուր աստիճան իրենից «մասնակի» թռիչք է ներկայացնում, որոնք նախապատրաստում են իսկական, համապարփակ, մեծ թռիչքը: Այդ պրոցեսի դիալեկտիկան բացատրել է Գ. Վ. Պլեխանովը: Ըստ նրա, «թռիչքները ենթադրում են անընդհատ փոփոխություն, իսկ անընդհատ փոփոխությունը անխուսափելիորեն հանգեցնում է թռիչքների: Սրանք միևնույն պրոցեսի երկու անհրաժեշտ մոմենտներն են» (Գ. Վ. Պլեխանով, Փիլիսոփայական ընտիր երկեր, Հայպետհրատ, 1962, հ. 2, էջ 638): Այնուհետև. «Քանակական փոփոխությունները, աստիճանաբար կատարվելով, անցնում են, վերջապես, որակականների: Այդ անցումները կատարվում են թռիչքներով և չեն կարող կատարվել այլ կերպ» (Գ. Վ. Պլեխանով, Փիլիսոփայական ընտիր երկեր, Հայպետհրատ, 1960, հ. 1, էջ 412):

Ինչպես ցույց է տալիս ռեալ սոցիալիզմի պատմական փորձը, զարգացած սոցիալիզմի կատարելագործմանը զուգընթաց տեղի կունենա աստիճանական անցումը կոմունիզմին: Հասկանալի է, որ այդ պրոցեսը կբնորոշվի առաջընթացի սեփական էտապներով և աստիճաններով: Թե որքան կտևեն դրանք, ինչ կոնկրետ ձևեր կընդունեն, ցույց կտան միայն փորձը, կենդանի պրակտիկան:

Այնուհետև, քննարկվող տեսակետներում չի բացահայտվում լենինյան [«բնութագրել սոցիալիստական հասարակությունն իր ծավալուն ձևով, այսինքն՝ կոմունիզմը», «ավարտուն սոցիալիզմը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 80—81)] կանխատեսմամբ հայտնաբերված հասարակական զարգացման աստիճանները կոմունիստական ֆորմացիայի լինելիության պրոցեսի մեջ: Մեր կարծիքով, կոմունիզմի միջին փուլը հենց այն է նշանակում, երբ սոցիալիզմը և կոմունիզմը «միահյուսվում են», երբ տեղի են ունենում սինթեզը, թռիչքը: Այս հանգամանքն է, որ դեռևս լուրջ ուշադրության չի արժանացել:

«Կոմունիզմի միջին փուլի» մեթոդաբանական նշանակությանը անդրադարձել է նաև Ց. Ա. Ստեփանյանը: Նշելով, որ դա Վ. Ի. Լենինի կողմից կոմունիզմի նոր, հատուկ փուլի ճանաչում չի նշանակում, ավելացնում է. «Այդ հասկացության ներմուծումով Վ. Ի. Լենինը ցույց տվեց միայն նոր կարգի ձևավորման տարբեր էտապների ճանաչման անհրաժեշտությունը» (О закономерностях возникновения и развития социалистического общества. М., 1960, стр. 12): Շուրջ քսան տարի հետո նորից դիմելով քննարկվող պրոբլեմին, Ց. Ստեփանյանը հավասարության նշան է դնում «կոմունիզմի միջին փուլի» և «կոմունիզմը հիմնականում ստեղծելու» շրջանի միջև: Նա գրում է, որ «հայտնի լենինյան ֆորմուլան «կոմունիզմի միջին փուլի» մասին համապատասխանում է կոմունիզմը հիմնականում ստեղծելու շրջանին» (Ц. А. Степанян, Диалектика развития зрелого социализма и постепенного перехода к коммунизму.—Развитой социализм и актуальные проблемы научного коммунизма». М., 1979, стр. 26):

Կոմունիստական գալիքի հաստատման ուղիների և էտապների հարցում զգալի է ՍՄԿԿ XXVI համագումարի դերը: Այնտեղ հանգամանորեն ցույց տրվեց, որ «հասարակության անդասակարգ կազմավորումը գլխավորապես և հիմնականում տեղի կունենա հասուն սոցիալիզմի շրջանակներում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 86): Այս հետևության հիման վրա ակադեմիկոս Պ. Ն. Ֆեդոսեևը առաջարկում է ճշգրտել դեպի սոցիալապես միատարր հասարակություն կատարվող շարժման էտապների մասին պատկերացումը: Մասնավորապես, նա առաջարկում է իրարից տարբերել հարաբերականորեն երկու ինքնուրույն էտապներ. միջդասակարգային տարբերությունները գլխավորում և հիմնականում հաղթահարելու էտապը նրանց մնացորդների վերջնական ջնջման էտապից, երբ կչքանան ոչ միայն դասակարգերի



բաժանումը, այլև աշխատանքի հին բաժանումը («Коммунист», 1981. № 16, стр. 46—47):

Մեր կարծիքով, Պ. Ն. Ֆեդոսեևի տեսակետի հետևողական զարգացումը մի կողմից և մյուս կողմից էլ դարաշրջանի լենինյան ըմբռնման մեթոդաբանական դերի հաշվառումը, նրա բովանդակության բացատրման մեջ դասակարգերին (տվյալ դեպքում՝ բանվոր դասակարգին) վերապահվող դերի գնահատումը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 26, էջ 169—170) հանգեցնում է այն հետևության, որ «կոմունիզմի միջին փուլը» համընկնում է նշված երկու էտապների հետ, որ այն դասակարգային բոլոր տարբերությունների (և՛ գլխավոր ու հիմնական, և՛ ածանցյալ ու աննշան) հաղթահարման ու չքացման պրոցեսն է նշանակում:

Անկասկած է, որ հասուն սոցիալիզմի կատարելագործման առկա տենդենցների էքստրապոլյացիան (արտարկում, տարածում) դեպի կոմունիզմի երկրորդ փուլ, իր հերթին, ժամանակին «կհայտնաբերի» հասուն սոցիալիզմի աճի սեփական սահմանները: Միաժամանակ, այն պահին, երբ սոցիալիզմի օրինաչափությունների հետևողական էքստրապոլյացիան հակասության մեջ կմտնի կոմունիստական իրականության ռեալ պրոցեսների հետ, երբ այդ հողի վրա կառաջանան, ինչպես բնագետներն են արտահայտվում, պարադոքսներ, դա կնշանակի, որ սկսվել է իսկական կոմունիզմը:

Սովետական հասարակության զարգացման արդի փուլում կոմունիստական գալիքի հաստատման (զարգացած սոցիալիզմի կատարելագործման) ուղիները որոշելու պրոբլեմը, գիտական կանխատեսման մեթոդաբանության հետագա մշակման և այդ բոլորի մեջ մարքսիզմի դասականների հարուստ տեսական ժառանգության լայն օգտագործման խնդիրը հրամայական անհրաժեշտություն են: Իսկ ինչ վերաբերում է ՍՄԿԿ XXVI համագումարի այն հետևությանը (և նրա հիման վրա «կոմունիզմի միջին փուլ» լենինյան արտահայտության բովանդակության բացահայտմանն ու հարստացմանը), ապա այն իր էական կնիքը կթողնի հասարակական առաջընթացի բոլոր բնագավառների վրա:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախապատրաստման հանձնաժողովի նիստում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշեց. «Անդասակարգ սոցիալիստական հասարակության կազմավորումը կարևոր էտապ կլինի դեպի լիակատար սոցիալական միատարրություն տանող ճանապարհին և, անտարակույս, էական փոփոխություններ կառաջացնի վերնաշենքային բոլոր կառուցվածքներում»:

Եվ այժմ, երբ ՍՄԿԿ-ն նախապատրաստվում է իր հերթական XXVII համագումարին և կընդունի ծրագրի նոր խմբագրությը, էական է ոչ միայն իրականության օբյեկտիվ բացատրությունը, այլև հեռանկարային նպատակների տեսականորեն հիմնավորված բնութագրումը: Չէ՞ որ, ինչպես նշեց Կ. Ու. Չեռնենկոն ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում արտասանած ճառում. «մենք ամեն ինչ անում ենք այդ հեռանկարը մոտեցնելու համար»:

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ—ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԴԱՇԻՆՔԸ

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Արդի դարաշրջանը՝ կապիտալիզմից սոցիալիզմին հեղափոխական անցման դարաշրջանը, զարգանում է հուժկու հեղափոխական գործոնների ազդեցության ներքո, որոնցում կարևորվում է հիմնական համաշխարհային ուժերի փոխգործողությունն ու դաշինքը: Մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծմամբ օրակարգի հարց դարձավ համաշխարհային սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման դաշինքի ամրապնդումը: Այդ ժամանակից ի վեր ՍՍՀՄ-ը միշտ հսկայական նշանակություն է տվել այդ դաշինքի ամրապնդմանն ու զարգացմանը՝ վարելով ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականություն, օգնություն և աջակցություն ցույց տալով ազգային ազատագրության ու սոցիալական առաջընթացի համար պայքարող ժողովուրդներին:

ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը ելակետային նշանակություն ունի նշված երկու հեղափոխական ուժերի դաշինքի ու փոխգործողության խնդիրների համար: Ավելին, այսօր խիստ ընդլայնվել են ինտերնացիոնալիզմի դերն ու նշանակությունը. այն նախկին գաղութներում և կիսագաղութներում ներքին առաջադիմական պրոցեսների զարգացման գործում խնդիրների լայն շրջանակ է իրականացնում: Այդ երկրներն առավել լայն սոցիալական բազա են ստեղծում ազգային ազատագրության ուժերի և սոցիալիզմի աշխարհի հետագա մերձեցման համար:

Սոցիալիստական պետության ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականության էությունն ու դերն ըմբռնելու համար կարևոր է նկատի ունենալ, որ այն ազգային-ազատագրական շարժման վրա սոցիալիզմի ներազդման ուղղություններից մեկն է, նորանոր ազդակներ է ստանում, կարծես իր մեջ կենտրոնացնելով այնպիսի գործոններ, ինչպիսին են սոցիալիզմի հարաճուն հզորությունը, համաշխարհային ասպարեզում երկու հասարակական սիստեմների ուժերի հարաբերակցության փոփոխությունը, սոցիալիզմի միջազգային հեղինակության, ազգային-ազատագրական պայքարի վրա նրա գաղափարախոսական, ընդհանուր հեղափոխականացնող ազդեցության ուժը և այլն: Կոմպլեքսային մոտեցումը նպաստում է նաև առավել հստակությամբ տեսնելու, որ ազգային-ազատագրական շարժման գոտիներում այդ քաղաքականության հաջողություններն իրենց հերթին խթանում են սոցիալիզմի հեղինակության աճը, նրա գաղափարական ազդեցության ուժեղացումը:

Ինտերնացիոնալիզմն օրգանապես բխում է սոցիալիստական հասարակարգի էությունից, նրա բոլոր հասարակական, ամենից առաջ տնտեսական հարաբերությունների սոցիալիստական բնույթից և ըստ էության նոր պայմաններում՝ միջազգային ասպարեզում իր ներքին քաղաքականության շարունակությունն է: «...Մեր պետության և՛ ներքին, և՛ արտաքին քաղաքականության ամենախորին արմատները,— գրել է Վ. Ի. Լենինը,— որոշվում են մեր պետության տիրապետող դասակարգերի տնտեսական շահերով, տնտեսական դրությամբ» (ԵԼԺ, հ. 36, էջ 401):



Սովետական պետության ներքին քաղաքականությունն արտահայտում է բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների արմատական շահերը: Բոլոր պրոցեսները՝ տնտեսական, սոցիալ-դասակարգային, հոգևոր-գաղափարախոսական, ազգային ու միջազգային, զարգանում են հօգուտ աշխատավորների շահերի, նրանց պահանջմունքների առավելագույն բավարարման միտումով: Այդ պրոցեսներով են պայմանավորված բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների մշտապես սերտացող մերձեցումը: Սոցիալիզմի զարգացման և գործառության բազմակողմանի ու բարդ պրոցեսի տարրերից յուրաքանչյուրը մասնակցում է արտաքին քաղաքականության ձևավորմանը՝ կազմելով նրա հիմքը:

Կա նաև այդ միասնության մյուս կողմը, մի տեսակ հետադարձ կապը: Վերցնենք, օրինակ, արտաքին քաղաքականության պետական-քաղաքական հիմքը՝ սովետական բազմազգ համաժողովրդական պետությունը, սոցիալիստական դեմոկրատիան: Որպես բազմազգ, էությամբ ինտերնացիոնալիստական ֆեդերատիվ պետություն, ՍՍՀՄ-ն իրավահավասարության, մեկ պետության մեջ երկրի ազգերի ու ազգությունների կամավոր միավորման մարմնացումն է: Մեկ միասնական պետության մեջ 53 զանազան ազգային սոցիալիստական պետությունների և ազգային-պետական կազմավորումների համախմբման, նրանց ներդաշնակ զարգացման փաստն ազգային հարաբերություններում հիրավի դեմոկրատիզմի արտահայտություն է: Սոցիալիստական դեմոկրատիզմը հասարակության կյանքի բոլոր, այդ թվում նաև ազգային հարաբերությունների ոլորտում մերձեցնում է բոլոր աշխատավորներին, բոլոր դասակարգերին, սոցիալական խմբերին, ազգերին ու ազգություններին, ամրապնդում է նրանց քաղաքական միասնությունը և, հետևապես, հասարակության քաղաքական հիմքը: Դա հզոր լիցք է հաղորդում սոցիալիզմի արտաքին քաղաքականությանը, որի հաջողություններն իրենց հերթին ներքին քաղաքականության գործառության համար անհրաժեշտ միջազգային պայմաններ են ստեղծում:

Ներքին քաղաքականության խորք շարունակությունը լինելով, արտաքին քաղաքականությունը որոշվում է ոչ միայն սոցիալիստական պետության ներքին պայմաններով, պրոցեսներով, այլ նաև միջազգային զարգացման գործոններով: Արտաքին քաղաքականության ձևավորման և գործառության վրա լուրջ ազդեցություն ունեն այնպիսի միջազգային գործոններ, ինչպիսին են համաշխարհային ասպարեզում դասակարգային պայքարը, երկու հասարակական սիստեմների ուժերի հարաբերակցությունը, ազատագրված երկրների համակարգի ներսում ըստ դասակարգային հատկանիշի տարբերակումը, տարբեր պետությունների առանձնահատուկ շահերը, միջիմպերիալիստական հակասությունները և այլն: Այստեղից էլ՝ արտաքին քաղաքականության հարաբերական ինքնուրույնությունը:

Սոցիալիստական պետության արտաքին քաղաքականությունն իր դասակարգային բնույթով ինտերնացիոնալիստական է: Ընդ որում դասակարգայնությունը սոցիալիստական ինչպես արտաքին, այնպես էլ ներքին քաղաքականության ինտերնացիոնալիզմի խոր հիմքն է: Ազգամիջյան հարաբերություններում տեղի ունեցող ներքին ազգային և ինտերնացիոնալիստական պրոցեսներն արտահայտում են սոցիալ-դասակարգային խոր պրոցեսները, շահերը, բխում են արմատական հասարակական բարեփոխություններից: Սոցիալիզմի արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը գլխավորապես դրսևորվում է բանվոր դասակարգի շահերի պաշտպանությամբ, սոցիալիզմի ամրապնդմամբ, համաշխարհային շահագործողական ուժերի դեմ հաջող պայքարով, հեղափոխական պրոցեսի ողջ ճակատի առաջխաղացումով:

Ազգային-ազատագրական շարժումը և սոցիալիզմը համաշխարհային աս-

պարեզում այսօր հանդես են գալիս որպես դասակարգային դաշնակիցներ։ Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ միջազգային պրոլետարիատը հանդիսանում է Արևելքի բոլոր աշխատավորների և շահագործվող հարյուր միլիոնավոր մարդկանց միակ դաշնակիցը (տե՛ս ԵԼԺ, հ. 39, էջ 404)։ Դա ամենից առաջ վերաբերում է ՍՍՀՄ-ի պետականորեն կազմակերպված բանվոր դասակարգին։ Իր հերթին դաշնակցի կարևոր դեր է կատարում ազգային-ազատագրական շարժումը, որի նշանակությունը, որպես կապիտալիստական հասարակարգի դեմ պայքարող հեղափոխական ուժի, միջազգային հարաբերություններում աճում է։ Նրա հաջողություններն ու առաջընթացը նպաստում են սոցիալիստական երկրների դիրքերի ամրապնդմանը, աշխարհում ուժերի ընդհանուր հարաբերակցության փոփոխմանը։ Այդ իսկ պատճառով Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի մեկնաբանությամբ ազգային-ազատագրական շարժմանը ցույց տրվող ինտերնացիոնալիստական օգնությունը, սոցիալիստական պետության դասակարգային մարդասիրությունը բնավ էլ բարեգործությունը չէ։

Իհարկե, ընդհանուր թշնամու դեմ պայքարում երկու մեծ հեղափոխական ուժերի միջև օբյեկտիվ փոխադարձ կապ կա։ Բայց եթե դա ապահովվում է նրանց զարգացման ընթացքով, մեծ մասամբ տարերայնորեն, ապա նրանց միջև դաշինքը կարող է լինել այդ փոխկապակցվածության գիտակցության, նրանց գործունեության արմատական խնդիրների ընդհանրության, որոշակի քաղաքականության արդյունք։ Դա ընդհանուր թշնամու՝ իմպերիալիզմի դեմ համատեղ պայքարի, մարտական համերաշխության և փոխօգնության դաշինք է, պատմական անհրաժեշտություն։ Այն, ըստ էության, երկու հեղափոխական ուժերի փոխկապակցվածության սուբյեկտիվ կողմն է։

Հարկ է նշել, որ այդ դաշինքը պատմական զարգացման ընթացքում ձեռք է բերում նոր որակական հատկանիշներ։ Քանի դեռ Ասիայում և Աֆրիկայում պահպանվում էին գաղութային կայսրությունները, համաշխարհային սոցիալիզմի փոխգործողությունը ճնշված ժողովուրդների պայքարի հետ, նրանց դաշինքը զարգանում էր հասարակական կազմակերպությունների, քաղաքական կուսակցությունների, ընդհանրապես ազատագրական ուժերի հետ ունեցած կապի միջոցով։ Այժմ, երբ գաղութային վարչակարգերը վերացել են, սոցիալիզմը, ընդարձակելով ու ամրապնդելով ավանդական կապերը ազատագրական ուժերի հետ, դաշինքն իրականացնում է առավել բարձր՝ պետական մակարդակով։ Քանզի ազգային-ազատագրական շարժումն այսօր զարգանում է պետական-քաղաքական շրջանակներում, այն վերածվել է պետականորեն կազմակերպված ուժի։

Այդ դասակարգային դաշինքի ամրապնդման գործում սոցիալիզմի արտաքին քաղաքականության դերը հսկայական է այն պատճառով, որ ինտերնացիոնալիզմը չի հանգում սոսկ հակագաղութային պայքարի հետ համերաշխությանը և նույնիսկ գործուն աջակցությանը։ Այն առավել լայն ու հարուստ է, պարունակում է փոխհարաբերությունների հիմնական նորմերն ու սկզբունքները, սահմանում պետությունների, ազգերի ու ժողովուրդների միջև հարաբերությունների սկզբունքորեն նոր տեսակ։ «Ինտերնացիոնալիստական դաշինք հնարավոր է միայն այն ազգերի միջև, որոնց գոյությունը, հետևապես ներքին գործերում ինքնավարությունն ու անկախությունը ներառվում են ինտերնացիոնալիզմի բուն հասկացության մեջ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 39, стр. 74)։ Երիտասարդ պետությունների հետ իր հարաբերություններում սովետական պետությունը խստիվ ղեկավարվում է այնպիսի սկզբունքներով, որոնք ինտերնացիոնալիզմի մարմնացումն են։ Դրանք են.

1. յուրաքանչյուր ժողովրդի՝ ինքնուրույն կերպով, առանց դրսից միջամտության, իր ներքին գործերն իրականացնելու իրավունքի ճանաչում. նրանց նկատմամբ տիրապետության կամ գերատիրության որևէ ձևի հաստատման կամ որևէ տերության «շահերի ոլորտ» ընդգրկելու փորձերից հրաժարում. 2) այդ երկրների տարածքի ամբողջականության, նրանց սահմանների անձեռնմխելիության խստիվ հարգում, դրսից ոչ մի աջակցություն այդ երկրների մասնատմանն ուղղված որևէ սեպարատ շարժման. 3) միջազգային կյանքում իրավահավասար մասնակցության, աշխարհի ցանկացած երկրների հետ հարաբերությունների զարգացման հարցերում Աֆրիկայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի յուրաքանչյուր պետության իրավունքի անվերապահ ճանաչում. 4) իրենց բնական պաշարների նկատմամբ այդ պետությունների սուվերենության լիակատար և անվերապահ ճանաչում, ինչպես նաև միջազգային տնտեսական հարաբերություններում նրանց լիակատար իրավահավասարության գործնական ճանաչում, գաղութատիրության մնացուկների վերացման նպատակով նրանց ջանքերի սատարում, ՄԱԿ-ի որոշումներին համապատասխան ռասիզմի և ապարտեիդի իսպառ վերացում. 5) Աֆրիկայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի պետությունների մեծամասնության ընտրած չմիանալու ստատուսի հարգում, տերությունների ռազմաքաղաքական բլոկների մեջ նրանց ներքաշելու փորձերից հրաժարում։

Ինչպես նշված սկզբունքները, այնպես էլ ժողովուրդների պայքարին ինտերնացիոնալիստական աջակցության հիմնական ձևերն ու ուղղությունները առաջացան սոցիալիստական հասարակարգի հաստատմամբ և այսօր լիովին դրսևորվեցին, հագեցվեցին հարուստ բովանդակությամբ։ Այդ ձևերից կարևորագույններն են՝ ազատագրված երկրների և կոնկրետ ազգային-ազատագրական շարժումների քաղաքական-դիվանագիտական աջակցությունը, տնտեսական ազատագրման և սոցիալական առաջընթացի խնդիրների լուծման գործում ֆինանսատնտեսական օժանդակությունը, բոլոր առումներով պաշտպանության ամրապնդման գործում օժանդակությունը, ազատագրված երկրներին կուլտուրական և գիտատեխնիկական օգնությունը, նրանց բարոյական սատարումը։ Այսօր արդեն կայունացած այս ձևերից յուրաքանչյուրին համապատասխանում են յուրահատուկ ուղիներ, միջոցներ, մեթոդներ։ Դրանք փոխպայմանավորված են, և մեկ բնագավառի հաջողությունն անդրադառնում է մյուսի վրա։

Դժվար է այսօր գերագնահատել գաղութատիրության դեմ պայքարող ժողովուրդներին սովետական պետության ցույց տված ինտերնացիոնալիստական օգնության նշանակությունը։ Սովետական Միության նախաձեռնությամբ ՄԱԿ-ում 1960 թ. ընդունվեց գաղութային երկրներին ու ժողովուրդներին անկախություն տալու վերաբերյալ պատմական դեկլարացիան։ Այսօր ազգային-ազատագրական պայքարի շարունակման և խորացման, առաջին հերթին տնտեսական ինքնուրույնության հասնելու համար կարևոր նշանակություն ունի ազատագրված երկրների քաղաքական անկախության, սուվերենության պաշտպանությունը։ Սրելով միջազգային իրադրությունը, իմպերիալիզմը ձգտում է էապես խարխլել թույլ, փոքր պետությունների անկախությունը, ոտնատակ է տալիս նրանց սուվերենությունը, որի մասին է վկայում Գրենադայի, Լիբանանի մի մասի զավթումը և այլն։

Հավատարիմ իր արտաքին քաղաքականության սկզբունքներին, ՍՍՀՄ-ը մշտապես բազմակողմանի օգնություն է ցույց տալիս իմպերիալիստական շանտաժի կամ ագրեսիայի օբյեկտ դարձած երիտասարդ պետություններին։ Անգոլայի համար ծանր օրերին, երբ իմպերիալիստներն ու հարավ-աֆրիկյան ռասիստները, օգտագործելով ռեակցիոն պառակտիչ խմբավորումները, սկսեցին ագրեսիա, ՍՍՀՄ-ը, Կուբան և մյուս սոցիալիստական երկրները այն կասեցնելու համար Անգոլային անհրաժեշտ օգնություն ցույց տվեցին։ Մեծ օգնություն ցույց տրվեց Սոմալիի կողմից հարձակման ենթարկված եթովպական ժողովրդին։ Այսօր ՍՍՀՄ-ն օգնում է Աֆղանստանին՝ պաշտպանելու իր հեղափոխական նվաճումներն ընդդեմ արտաքին ագրեսիայի ուժերի։ Հեղափոխական Աֆղանստանի ղեկավար Բ. Քարմալը ՍՄԿԿ XXVI համագումարում նշեց. «Եթե մեծ Սովետական Միության կողմից օգնություն ցույց չտրվեր հերոսական Աֆղանստանին, ապա այսօր գոյություն չէր ունենա հեղափոխական, ազատ, անկախ և չմիացած Աֆղանստանը»։ Նա այդ օգնությունն անվանեց գործնական ինտերնացիոնալիզմի բարձր օրինակ։

1984 թ. սեպտեմբերի 27-ին արտասանած ճառում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն նշեց. «Գաղութային կամ կիսագաղութային լուծը թոթափած երկրները և

իրենց ազատագրության ու անկախության համար պայքարող ժողովուրդները պետք է իմանան, որ միշտ կարող են ապավինել Սովետական Միության կողմից ըմբռնմանն ու համերաշխությանը»։

Ներկայումս ազատագրված երկրների Սովետական Միության քաղաքական-դիվանագիտական աջակցությունը նյութականացվել է բարեկամության և համագործակցության պայմանագրերում այնպիսի պետությունների հետ, ինչպիսին են Հնդկաստանը, Սիրիան, Եմենի Ժողովրդադեմոկրատական Հանրապետությունը, Անգոլան, Մոզամբիկը, Աֆղանստանը և ուրիշներ, որը վկայում է սոցիալիզմի և ազատագրված երկրների համագործակցության ձևերի զարգացման ու հարստացման մասին։

Սոցիալիզմի, ՍՍՀՄ-ի արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը վառ դրսևորվեց ազգային-ազատագրական պայքարին ցույց տրված ուղղակի աջակցության, ազատագրված երկրների հետ համագործակցության մեջ։ Միևնույն ժամանակ ինտերնացիոնալիստական է սոցիալիզմի ողջ արտաքին քաղաքականությունը։ Սոցիալիզմը ինտերնացիոնալիստական դեր ու խնդիրներ է իրականացնում ազգային-ազատագրական պայքարի գոտիներում նաև այն ժամանակ, երբ վճռում է համամարդկային, համընդհանուր պրոբլեմներ հանուն խաղաղության, լարվածության թուլացման, զինաթափման, հանուն միջազգային քաղաքական ու տնտեսական հարաբերությունների հետագա դեմոկրատացման և այլ նպատակներով մղած պայքարում։ Փաստ է, որ լարվածության թուլացման խորացումը, միջազգային կյանքում նրա սկզբունքների հաստատումը լուրջ խոչընդոտներ են դնում իմպերիալիզմի նեոգաղութատիրական էքսպանսիայի ռազմաքաղաքական ձևերի, ուժի գործադրման, հարկադրանքի, հակահեղափոխության արտահանման և այլնի առջև։ 80-ական թվականների սկզբի իրադարձությունները ցույց են տալիս, որ իմպերիալիզմի զավթողամոլությունը (անգլո-արգենտինյան ռազմական կոնֆլիկտը, Իսրայելի ագրեսիան ընդդեմ Լիբանանի, ԱՄՆ-ինը՝ Գրենադայի դեմ և այլն) ուժեղանում է ասես միաժամանակ, դեպի «սառը պատերազմ» ու առճակատում ողջ իմպերիալիստական քաղաքականության շրջադարձի ընդհանուր հունում։ «Սառը պատերազմի» քաղաքականությունը, որի մասին է վկայում, օրինակ, 50-ական թվականների պատմությունը, անտեսում է ազատագրված երկրների սուվերենությունը, արհամարհում և ոտնահարում է ժողովուրդների օրինական իրավունքները։ Իսկ լարվածության թուլացման քաղաքականությունը, նրա ոգին, այն իրականացնելու հնարավորությունները ենթադրում են միջազգային գործերում, խաղաղության ու պատերազմի, մարդկության հետագա պրոգրեսի բախտը որոշելիս ազատագրված երկրների դերի մեծացում։

Տնտեսական համագործակցությունը սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման դաշինքի ձևերից է և հակակշիռ է իմպերիալիստական էքսպանսիային։ Այն երիտասարդ պետությունների սուվերենության ամրապնդման համար մղվող պայքարի հաջողության հնարավորություններ է ստեղծում։ Տնտեսական համագործակցությունը սոցիալիզմի արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմի վառ վկայությունն է։ Առևտրատնտեսական համագործակցության կարևոր առանձնահատկությունն այն է, որ նա միաժամանակ և՛ փոխշահավետ բնույթ ունի, և՛ հանդես է գալիս որպես օգնություն երիտասարդ պետություններին։ Հենց ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի մյուս երկրների հետ երիտասարդ պետությունների ամրապնդվող և խորացող համագործակցությունն ստիպեց իմպերիալիզմին փոքր-ինչ չափավորել իր նկրտումները։

Հնդկաստանի պրեզիդենտ Զաիլ Սինգհը 1982 թ. օգոստոսին հայտարարեց. «Մեր հիմնական խնդիրն անկախություն ձեռք բերելու պահից ի վեր եղել է մեր ժողովրդի սոցիալական և տնտեսական առաջընթացին հասնելուն նպաստող պայմանների ստեղծումը։ Մենք բարձր ենք գնահատում Սովետական Միության հետ համագործակցությունը, որն օգնեց Հնդկաստանին առաջ շարժվելու տնտեսական ինքնապահովվածության ուղիով և մտնելու աշխարհի արդյունաբերականորեն զարգացած երկրների շարքը»։ Հետաքրքրական է նաև Եգիպտոսի խոշոր քաղաքական գործիչ Խ. Իզմայիլի 1982 թ. օգոստոսին ար-



տահայտած այն միտքը, թե Եգիպտոսում ամենախոշոր օբյեկտները կառուցել է Սովետական Միությունը և կարելի է վստահորեն ասել, որ Սովետական Միությունը հանդիսացավ Եգիպտոսի արդյունաբերական բազայի հիմնողը։ «Եգիպտոսը,— 1984 թ. մայիսին հայտարարեց էներգետիկայի մինիստր Մահեր Աբազան,— չի մոռանա այն մեծ օգնությունը, որ Սովետական Միությունը ցույց տվեց Ասուանի կառուցման գործում։ Մենք շնորհակալ ենք ՍՍՀՄ-ին՝ տնտեսական և տեխնիկական օգնության համար»։

Այս արտահայտություններում առկա է ՍՍՀՄ-ի անշահախնդիր օգնության ճանաչումը ազատագրված երկրների անկախ զարգացման տնտեսական հիմքի ստեղծման գործում։ Հատկանշական է, որ 1960 թ. ՍՍՀՄ-ը դիվանագիտական հարաբերություններ ուներ 29 ազատագրված երկրների հետ, իսկ 1979 թ. արդեն 76 երկրների հետ։ ՏՓԽ-ի անդամ երկրների ապրանքաշրջանառությունը ազատագրված երկրների հետ 1950—1980 թթ. աճել է մոտավորապես 33 անգամ։ Այն ազատագրված երկրների թիվը, որոնց հետ Սովետական Միությունը միջպետական համաձայնագրերի հիման վրա իրականացնում է տնտեսական ու տեխնիկական համագործակցություն, 1960 թվականի 18-ից 1970 թ. հասել էր 44-ի, իսկ 1981 թ.՝ 70-ի։ Սովետական Միության օժանդակությամբ այդ երկրներում կառուցված են 1.700 արտադրական ձեռնարկություն, էլեկտրակայաններ, հիդրոտեխնիկական, գյուղատնտեսական և այլ ժողովրդատնտեսական օբյեկտներ։ Ներկայումս կառուցվում է և նախատեսված է կառուցել ևս շուրջ 1.400 ձեռնարկություններ և օբյեկտներ։

Համագործակցության բնույթի մասին է խոսում նաև այն փաստը, որ այժմ ՍՍՀՄ-ի տնտեսական և տեխնիկական աջակցությամբ ազատագրված երկրներում կառուցված և կառուցվող ձեռնարկությունների արտադրական հզորությունները, օրինակ, նավթի հանույթի գծով կազմում են տարեկան 68 մլն տոննա, քարածխինը՝ 80 մլն, երկաթահանքինը՝ 19 մլն, չուգունի ձուլմանը՝ 27 մլն տոննա, ալյումինինը՝ 500 հազար տոննա, գլանվածքինը՝ 25 մլն, ցեմենտինը՝ 6,5 մլն տոննա։ Խոշոր հզորություններ են ստեղծված նաև պողպատի ձուլման, էլեկտրաէներգիայի, կոքսի և արդյունաբերական արտադրանքի այլ տեսակների արտադրության գծով։

Ինտերնացիոնալիզմը, որպես սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության համընդհանուր սկզբունք, որը հաստատում է սուվերենությունն ու իրավահավասարությունը, ամեն կերպ խթանում է նաև այն միտումի զարգացումը, որը բխում է ազգային-ազատագրական շարժման սոցիալական բովանդակության խորացումից, ուղղակիորեն շոշափում է ազգային ազատագրության ու սոցիալիզմի ուժերի բախտը և լրացվում հակաիմպերիալիստական պայքարում արմատական շահերի ու նպատակների վրա խարսխվող սոցիալական ու դասակարգային շահերի մերձեցմամբ։

Այդ առումով բացառիկ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական կողմնորոշման երկրների խմբի երևան գալը։ Զարգացման այս ուղու ընտրությունը որոշում է ներքին հակաիմպերիալիստական վերափոխությունների խորությունը, կապիտալիզմից սոցիալիզմին համաշխարհային պատմական անցման պրոցեսում ազատագրված երկրների մասնակցության աստիճանը, դրանով իսկ օբյեկտիվ հիմք ստեղծելով նրանց զարգացման վրա առաջավոր հասարակարգի՝ համաշխարհային սոցիալիզմի բարերար, հեղափոխականացնող ազդեցության խորացման ու ընդլայնման համար։ Իսկ սոցիալիստական կողմնորոշման մի շարք երկրներում, որտեղ հակաշահագործողական բնույթի խոր բարեփոխումներ են իրականացվում, որտեղ ողջ հասարակական զարգացմանը սոցիալիստական կողմնորոշում է հաղորդվում, տեղի է ունենում հեղափոխական-դեմոկրատական քաղաքականության և գաղափարախոսության ռեալ էվոլյուցիա դեպի գիտական սոցիալիզմի դիրքերը, սոցիալիզմի աշխարհի և ազգային ազատագրության ուժերի միջև դասակարգային դաշինքի համար գոյավորվում է առավել լայն սոցիալական ու քաղաքական բազա։

Քննարկվող հարցի հայտնի մասնագետ Կ. Ն. Բրուտենցն ազգային-ազատագրական շարժումների բովանդակության նման հարստացումը դիտում է

որպես սոցիալիզմի հետ նրանց հետագա մերձեցման աղբյուր։ Նա նշում է, որ «մեր դարաշրջանում ազգային-ազատագրական շատ հեղափոխությունների զարգացման պատմական միտումը նրանց հասարակական բովանդակության հարստացման հիման վրա համաշխարհային հեղափոխական պրոցեսի մյուս ուժերի հետ մերձեցումն է և այդ հիման վրա իր պրոգրեսիվ դերը ամբողջությամբ դրսևորելը» (К. Н. Брутенц. Современные национально-освободительные революции. М., 1974, стр. 46)։

Սոցիալիստական կողմնորոշման հսկայական հեղափոխական կարողությունները դրսևորվում են ոչ միայն այն բանում, որ այն խոր դեմոկրատական, առավել հետևողական հակաիմպերիալիստական բնույթ ունի, այլ առավելապես այն բանում, որ այստեղ հասարակական պրոցեսները դուրս են գալիս կապիտալիզմի շրջանակներից, ուղղված են կապիտալիզմի՝ որպես հասարակարգի դեմ։ Մեր դարաշրջանի՝ կապիտալիզմից սոցիալիզմին հեղափոխական անցման դարաշրջանի, բնույթն ամենից առաջ և վառ կերպով դրսևորվում է սոցիալիստական կողմնորոշման ձևով։ Հենց այդ երկրներն են ընթանում ազգային-ազատագրական պայքարի ավանգարդում, լիովին մարմնավորում ազգային ազատագրման և սոցիալական պրոգրեսի օրինաչափությունները ու պայմանները։ Ահա թե ինչու սոցիալիզմի և ազգային ազատագրման ուժերի մարտական դաշինքը համակողմանիորեն մարմնավորվում է սոցիալիստական կողմնորոշման երկրների հետ համագործակցությունում։ Սոցիալիզմի արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը, ազգային-ազատագրական շարժմանը ցույց տրվող օգնությունն ու աջակցությունն ուղղված են համագործակցության՝ որպես միջպետական մակարդակով դասակարգային դաշինքի, զարգացմանն ու խորացմանը։

Հատկանշական է, որ սոցիալիստական կողմնորոշման երկրները հետզհետե ավելի ու ավելի են դասակարգային չափանիշներ առաջադրում սոցիալիստական ընկերակցության երկրների արտաքին քաղաքական քայլերը պաշտպանելիս, սոցիալիստական երկրների ներքին պրոցեսները գնահատելիս՝ հատկապես 80-ական թվականների սկզբին։ Ինչ վերաբերում է սոցիալիզմի արտաքին քաղաքական քայլերին, ապա սոցիալիստական կողմնորոշման երկրները գործնականում լիակատար համերաշխություն են հայտնում նրանց հետ, հատկապես խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման, իմպերիալիստական ագրեսիային հակահարված տալու, գաղութատիրության և նեոգաղութատիրության դեմ պայքարի, միջազգային լարվածության թուլացման հարցերում։

ՍՍՀՄ-ը և սոցիալիստական ընկերակցության երկրները մշտապես ընդլայնում և խորացնում են փոխշահավետ համագործակցությունը սոցիալիստական կողմնորոշման երկրների հետ կյանքի բոլոր՝ տնտեսական, քաղաքական, կուլտուրական, միջկուսակցական ու գաղափարախոսական հարաբերությունների, արտաքին քաղաքական գործունեության և այլ ոլորտներում։

70—80-ական թվականներին սոցիալիստական կողմնորոշման երկրների և սոցիալիստական ընկերակցության երկրների միջև հարաբերությունները բարձրացվեցին մի նոր աստիճանի, ասես նոր ձև ստացան. նրանց միջև սկսեցին հարաբերություններ հաստատվել երկարաժամկետ միջազգային համաձայնագրերի հիման վրա, որոնք որոշ դեպքերում ամրապնդվում էին միջկուսակցական համաձայնագրերով։

Սոցիալիստական կողմնորոշում ունեցող ազատագրված երկրների թվի մեծացումը, սոցիալիզմի աշխարհի հետ երիտասարդ պետությունների համագործակցության ամրապնդումն ու ընդլայնումը, համաշխարհային զարգացման մեջ նրանց դերի բարձրացումը և ազգային-ազատագրական շարժման հաջողությունները գործնականում հաստատում են սոցիալիզմի ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականության կենսականությունն ու ուժը։

Մոսկվա

# ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՍՍՀՄ-ՈՒՄ ԵՎ ՆՐԱ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՆԵՆԳԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՍՆԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

Մ. ՍԱՆԹՐՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿԱԼԻՑ իրողություն է մեր բազմազգ երկրում ազգային հարցի իսկապես սոցիալիստական լուծումը, ազգերի ամեն կարգի անհավասարության վերացումը և ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հաստատումը։ Սովետական Միության ազգերի և ազգությունների հարաբերություններին բնորոշ են նրանցից յուրաքանչյուրի համակողմանի ծաղկումը և օրինաչափորեն համագործակցությունն ու մերձեցումը, որոնց շնորհիվ ձևավորվել է մարդկանց պատմականորեն նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։

ՍՄԿԿ-ն ազգային հարաբերությունների բնագավառում հետևողականորեն ելնում է լենինյան այն դրույթից, որ ազգերի ֆեդերացիան երաշխավորում է աշխատավորների գիտակցական և առավել սերտ միասնությունը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 90)։ Սոցիալիստական ազգերի և ազգությունների եղբայրական համագործակցությունը, նրանց համատեղ ջանքերի գործադրումը միասնական ժողովրդատնտեսական համալիրի, նրա նյութատեխնիկական պոտենցիալի մեծացման ասպարեզում, սովետական մշակույթի գանձարանում կատարած նրանց ներդրումը ապահովում են միասնական բազմազգ պետության համակողմանի զարգացումն ու հզորացումը։ «Պատմությունը չգիտի այնպիսի պետություն,— ասված է «ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. որոշման մեջ,— որն ամենակարճ ժամկետներում այնքան շատ բան արած լինի ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման համար, որքան է ՍՍՀՄ-ը՝ մեր բոլոր ժողովուրդների սոցիալիստական հայրենիքը»։

ՍՍՀՄ ժողովուրդների կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած ակնառու հաջողություններն անժխտելիորեն վկայում են սոցիալիզմի՝ որպես հասարակարգի, արմատական առավելությունները։ Կուսակցության կողմից սովետական ազգերի ու ազգությունների՝ ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցումը, միասնական միության մեջ համախմբումը բազմապատկում է նրանց ուժերը։ «Լավ կշռադատված, գիտականորեն հիմնավորված ազգային քաղաքականությունը զարգացած սոցիալիզմը կատարելագործելու կուսակցության գործունեության անբաժանելի մասն է»,— ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում։

ՍՍՀՄ-ում ազգային հարցի լուծման պատմական փորձը վիթխարի ազդեցություն է գործում համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա։ Մասնավորապես զարգացող երկրների աշխատավորական զանգվածները հետզհետե ավելի ու ավելի են համոզվում, որ միայն սոցիալիզմը կարող է վերջ դնել ազգային ճնշմանն ու անհավասարությանը, ստեղծել բարեկամության ու իրավա-

Ազգային-ազատագրական շարժման մեջ (չնայած սկզբնական շրջանում նացիոնալիզմի՝ իմպերիալիզմի դեմ ուղղված հեղափոխական ուժերի համախմբման առումով կատարած որոշ դրական դերին) ազգային անկախ պետականության ստեղծումից հետո ազգային բուրժուազիան այն օգտագործում է երկրի զարգացումը կապիտալիզմի ուղիով տանելու համար և դրանով իսկ վիրաժում սոցիալական առաջընթացը կասեցնող գործոնի։ Նացիոնալիզմի այս հետադիմական դերը բոլոր միջոցներով օժանդակում ու խրախուսում է բուրժուական պրոպագանդան։

Ամբողջ աշխարհին հայտնի է ազգային փոքրամասնությունների, օտար երկրյա բանվորների դաժան շահագործումն ու նրանց նկատմամբ խտրականությունը կապիտալի երկրներում, որոնց կառավարող շրջանները կեղծավորաբար ճամարտակում են «մարդու իրավունքների» մասին։ Քաղաքացիական, ազգային իրավունքների համար պայքարող մարտիկները դաժան բռնությունների ու հալածանքների են ենթարկվում ԱՄՆ-ում, Հյուսիսային Իռլանդիայում, Հարավ-աֆրիկյան Հանրապետությունում և այլ երկրներում։ Յուրաքանչյուր անկանխակալ մարդ տեսնում է՝ կապիտալիզմն ընդունակ չէ լուծելու իր իսկ ծնունդ տված ազգային հարցը։

Հիրավի, ապարդյուն են բուրժուական գաղափարախոսների ճիգերը՝ ծուռ հայելու մեջ ներկայացնելու կուսակցության ազգային քաղաքականության հաղթանակը մեր երկրում։ Ազգային հարցի լուծումը ողջ սոցիալիստական աշխարհում վկայում է, որ միայն սոցիալիզմն է ստեղծում բոլոր հնարավորությունները ազգերի անարգել զարգացման ու մերձեցման համար։

---

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ ԵՎ «ՊՈՊ-ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ»

## ՆԱՏԱԼՅԱ ԹՈՎՄԱՍՅԱՆ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև ծավալված պայքարն ավելի սուր ու անզիջում բնույթ է ստացել։ Ինչպես նշում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն. «60—70-ական թվականներին մի շարք խոշոր պարտություններ կրելով համաշխարհային ասպարեզում, իմպերիալիզմը, ամենից առաջ ամերիկյանը, ավելի ու ավելի զանգվածային, իր ծավալով աննախադեպ գրոհներ է ձեռնարկում մեր հասարակարգի, մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ, ձգտում է թունավորել սովետական մարդկանց գիտակցությունը, խեղաթյուրել մեր արտաքին քաղաքականության նպատակները, շրջափակել ռեալ սոցիալիզմի՝ խաղաղության և ժողովուրդների ազատության գործի գլխավոր հենարանի, ազդեցության աճը» (ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի նյութերը, «Հայաստան» հրատ., 1983, էջ 33—34)։

Կապիտալիզմի գաղափարախոսական դիվերսիայի ձևերը ներկայումս դառնում են ավելի նուրբ ու խորամանկ։ Կապիտալիստական սիստեմի խորացող ու սրվող ընդհանուր ճգնաժամի պայմաններում, բուրժուական տեսաբանները ճգնում են հորինել գաղափարախոսական ներազդման նոր, ավելի բարդ մեթոդներ, որպեսզի դրանց օգնությամբ ժողովրդական լայն զանգվածներին համոզեն, թե սոցիալական կազմակերպության կապիտալիստական ձևը հավերժ է։ Այդ սոցիալ-դասակարգային պատվերը կատարելու համար կապիտալիզմի ջատագովները դիմում են հասարակական գիտակցության տարբեր ձևերի հարուստ զինանոցին։ Ավելին, փորձելով հիմնավորել այդ նախապես կեղծ և, այդ իսկ պատճառով, դժվար հիմնավորվող դրույթը, նրանք ստեղծում են յուրօրինակ տեսական խառնուրդներ, որոնցում սոցիալ-մշակութային տարբեր երևույթներին ներհատուկ բնութագրերը միակցվում են մի ամբողջության մեջ։ Այդ առումով հատկանշական է արդի ամերիկյան բուրժուական սոցիալ-փիլիսոփայական մտքի որոշ ներկայացուցիչների մոտ նկատվող միտումը։

Ամեն մի փիլիսոփայական, այդ թվում նաև սոցիալ-փիլիսոփայական գիտելիք մարդուն մատչելի է լինում միայն մտավոր զարգացման որոշակի մակարդակում։ Արդի ոչ մարքսիստական հասարակագիտության հիմնական դիրքորոշման նպատակն է ժողովրդական լայն զանգվածների շրջանում ակտիվորեն գովաբանել կապիտալիստական սիստեմը, ինչպես նաև հիմնավորել կապիտալիզմի անանցողիկ բնույթի մասին անհիմն դրույթը։ Ժամանակակից բուրժուական սոցիալական փիլիսոփայության գաղափարախոսական դիրքորոշումը, որն ուղղված է ժողովրդական զանգվածների գիտակցությունը ձևանածական օբյեկտ դարձնելուն, պայմանավորեց այդ ըմբռնումների եթե ոչ բովանդակության, ապա դրանց ձևերում կատարվող էական փոփոխությունները։

Ներկայիս բուրժուական հասարակագիտական մտքի որոշ ներկայացուցիչների մոտ նկատվում է սոցիալ-փիլիսոփայական առօրեական գիտակցության պահանջներին հարմարեցված ըմբռնումների ստեղծման միտում։ Հաճախ դրանք մասսայականություն են վայելում և անմիջականորեն ուղղված

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆ Է

**Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
*ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար*

*«ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը լայն արձագանք գտավ մեր շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում։ Նրանք իրենց արածն ու անելիքները գնահատում, գործունեությունը վերակառուցում են Կենտկոմի որոշման պահանջներին համապատասխան, լուրջ հետևություններ անում հանրապետության կուսկազմակերպության հասցեին արված քննադատությունից։*

*ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ խնդիր է դրվում արմատապես բարելավել աշխատավորների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը, ապահովել գաղափարախոսական, կազմակերպական և տնտեսական գործունեության սերտ միասնությունը և այն ուղղել կոլեկտիվների առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը։ Ինչպես նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ «Կուսակցության պահանջներին խստիվ համապատասխանեցնել մասսաների շրջանում կազմակերպչական ու գաղափարախոսական ամբողջ գործունեության բովանդակությունը, ոճն ու մեթոդները»։ Իսկ այդ ամենի համար հարկավոր է առաջին հերթին ուժեղացնել սկզբնական կուսկազմակերպությունների և նրանց ստորին օղակների մարտունակությունը, բարձրացնել կոմունիստների ակտիվությունն ու զարգացնել նախաձեռնությունը։*

*Կուսշրջկոմն այդ խնդիրները մշտապես պահում է իր տեսադաշտում և ձգտում, որպեսզի կուսկազմակերպությունները մոտիկից խորամուխ լինեն հանրային արտադրության հարցերի մեջ, հետևողականորեն կատարեն գաղափարադաստիարակչական աշխատանքին կոմպլեքսային մոտեցում ցույց տալու վերաբերյալ կուսակցության պահանջը, արմատապես կատարելագործեն կուսակցական-կազմակերպական աշխատանքը։*

*Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունները, կուսխմբերը վճռական դեր են խաղում տնտեսական, սոցիալ-քաղաքական և մասսաների դաստիարակչական խնդիրների լուծման, կուսակցության քաղաքականության անշեղ իրականացման գործում։ Դա բացատրվում է նրանով, որ սկզբնական կուսկազմակերպությունն աշխատանքային կոլեկտիվի քաղաքական միջուկն է, մոտ է կանգնած արտադրության մարդկանց։ Նա պատասխանատվություն է կրում կուսակցության առաջ կոլեկտիվի գործունեության բոլոր կողմերի, նրանում բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ հաստատելու, ընդհանուր գործում նրա արժանի ներդրումն ապահովելու համար։*



*Կուսկազմակերպություններն իրենց շարքերում ընդգրկում են կոլեկտիվների ավելի գիտակից մասը, ակտիվ մարդկանց, որոնք վայելում են մեծ հեղինակություն ու վստահություն, ունեն նպատակների, հայացքների և գործողությունների միասնություն։ Նրանց վերապահվում են կուսակցության քաղաքականության իրականացման լայն իրավունքներ։ Սկզբնական կուսկազմակերպության գործունեության հաջողությունն ու հեղինակությունը մեծապես պայմանավորված են նրա յուրաքանչյուր անդամի քաղաքական ու գործնական հատկանիշներով, գործարարությամբ ու նախաձեռնությամբ։ Ահա թե ինչու ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը մշտապես հոգում է, որպեսզի ըստ ամենայնի բարձրանա ամեն մի կոմունիստի քաղաքական ու արտադրական ակտիվությունը, ամեն մի կոմունիստ ցուցաբերի բարձր պատասխանատվություն հանձնարարված գործի կատարման նկատմամբ և, ինչպես պահանջում է կուսակցությունը, լինի գիտակից ու ակտիվ մարտիկ՝ աշխատանքում և հասարակական կյանքում, ուսման բնագավառում և կենցաղում, ամենուրեք արժանվույն ձևով կրի լենինյան կուսակցության անդամի վեհ կոչումը։ Եվ օրինաչափ է, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն 1984 թ. մարտի 6-ին Կենտկոմի ապարատի հետ ունեցած հանդիպման ժամանակ նշեց, թե երկրի առջև ծառացած խնդիրների լուծումը պայմանավորված է կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացմամբ։ Այս կապակցությամբ օրակարգի մեջ է դրվում կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների հետագա կատարելագործման, կուսկազմակերպությունների մարտունակության ուժեղացման հարցը։*

*Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը բնորոշվում է նախ և առաջ նրա շարքերի որակական կազմով։ Ահա թե ինչու շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում կուսշարքերի աճի հարցերին։ Ամեն տարի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները նախապատրաստում են մի քանի հարյուր առաջավոր երիտասարդներ, որոնցից 50-ից ավելին ընդունվում է ՍՄԿԿ անդամության թեկնածու։ Նման ռեզերվի ստեղծումը հնարավորություն է ընձեռում երիտասարդության շրջանում ծավալել քաղաքական-դաստիարակչական արդյունավետ աշխատանք, ավելի մոտիկից ճանաչել նրան, մասնակից դարձնել կուսակցական կյանքին, հանձնարարություններ տալ, կազմակերպել նրա ուսուցումը։*

*Այս առումով բնորոշ է Շավարշավանի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության գործունեությունը։ Այստեղ յուրաքանչյուր տարի ՍՄԿԿ շարքերն են ընդունվում 3—4 առաջավոր բանվորներ ու ծառայողներ։ Կուսկազմակերպությունը երիտասարդներին ակտիվորեն ընդգրկում է հասարակական տարբեր կազմակերպությունների մեջ, նրանց տալիս տարատեսակ հանձնարարություններ, որոնց կատարման արդյունքներն ստուգվում են պարբերաբար։ Ռեզերվում ընդգրկված բոլոր երիտասարդները մասնակցում են քաղուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի աշխատանքին։ Ամեն անգամ, կուսակցության մեջ ընդունելու հարցը նախապատրաստելիս, հաշվի են առնվում դիմողի արտադրական ցուցանիշները, քաղաքական մակարդակը, հասարակական պարտականությունների կատարման վիճակը և, որ կարևոր է, այն կոլեկտիվի կարծիքը, որտեղ աշխատում է նա։ Դրա շնորհիվ այս կազմակերպությունում կուսշարքերն են ընդունվում արտադրության երիտասարդ առաջավորները, հիմնականում՝ ՀամԼԿԵՄ անդամներ և հասարակական ակտիվ աշխատողներ։ Վերջին ժամանակաշրջանում այստեղ կուսշարքերն ընդունվածների թվում են առաջավոր անասնապահ Սևան Մանթաշյանը, ծխախոտագործուհիներ Եվա Հեպինյանը, Անժելա Աբրահամյանը, ավտովարորդ Արտավազդ Մեջինյանը, բրիգադավար Ստյոպա Վերանյանը և ուրիշներ։*

*Կուսակցության շարքերն ընդունվելու համար դիմողներն անցնում են ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության ուսումնասիրման հատուկ դասընթաց։ Եվ, երբ նրանք ընդունվում են կուսշարքերը, արդեն պատրաստ են լինում կուսակցության քաղաքականության կենսագործման համար։ Այդ նպատակով շրջկո-*

մին առընթեր ստեղծել ենք երիտասարդ կոմունիստների դպրոց, որտեղ շարունակվում է նոր ընդունվածների ուսուցումը։

Կազմակերպական-քաղաքական հետևողական աշխատանքի միջոցով հաջողվել է նկատելիորեն բարելավել կուսշարքերի որակական կազմը, արտադրական օղակներում ամրապնդել կոմունիստների միջուկը։ Տարիներ առաջ ընդամենը երկու կոմունիստ կար Նոյեմբերյանի սովխոզի երեք այգեգործական բրիգադներում։ Կուսբյուրոն որոշակի աշխատանք կատարեց այդ կոլեկտիվներում կուսակցական միջուկ ստեղծելու համար։ Կուսշարքերի աճն ապահովվեց առաջավոր այգեգործների հաշվին։ Կուսակցությանը զինվորագրվեցին կոմունիստ Վազգեն Մարգարյանի ղեկավարած կոմերիտական-երիտասարդական բրիգադի առաջավոր այգեգործներ Սաշիկ Գիշյանը, Պայծառ Վարդանյանը, Նարինե Մամյանը։ Այժմ բրիգադում ստեղծվել է կուսակցական խումբ, որը մեծ աշխատանք է կատարում կոլեկտիվի ուժերը համախմբելու, առաջադրված խնդիրների կատարումն ապահովելու ասպարեզում։ Անցյալ տարի բրիգադն արժանացավ ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսի դիպլոմի։

Ձեռնարկած գործուն միջոցների շնորհիվ էապես բարելավվել է շրջանի կուսկազմակերպության որակական կազմը։ Ընթացիկ հնգամյակի տարիներին ՍՄԿԿ շարքերն ընդունվածների 73,5 տոկոսը բանվորներ են, 81 տոկոսը՝ մինչև 30 տարեկան երիտասարդներ, 38,5 տոկոսը՝ կանայք։

Կուսկազմակերպության մարտունակությունն ապահովելու պայմաններից մեկը կոմունիստների ակտիվության բարձրացումն է, նախաձեռնության զարգացումը։ Այդ գործում կարևոր դեր են խաղում նրանց տրվող հանձնարարությունները և դրանց կատարման սիստեմատիկ ստուգումը։ Այս տեսակետից մի շարք սկզբնական կազմակերպություններ զգալի փորձ են կուտակել։ Արդյունավետ է № 8 շարժական մեքենայացված շարասյան սկզբնական կազմակերպությունում կատարվող աշխատանքը։ Այստեղ բոլոր 17 կոմունիստներն էլ ունեն հասարակական պարտականություններ և մշտական կուսակցական հանձնարարություններ։ Կուսկազմակերպությունը պարբերաբար քննարկում է կոմունիստների հաշվետվություններն իրենց հասարակական պարտականությունների կատարման մասին, ուսումնասիրում գործերի վիճակը հասարակական կազմակերպություններում և կոմունիստների կատարած աշխատանքը իրենց ղեկավարած տեղամասերում։ Կոմունիստներին տրվող ժամանակավոր հանձնարարությունները գրանցվում են հատուկ մատյանում, սահմանվում են ժամկետներ, վերահսկվում է կատարման ընթացքը։ Դրա շնորհիվ նրանք ապահովում են ավանգարդային դերը, բարձր պատասխանատվությամբ վերաբերվում գործերի վիճակին։ Եվ, խնդրեմ արդյունքը. հնգամյակի անցած բոլոր տարիներին շինարարական այս կազմակերպությունն անթերի կատարել է շինմոնտաժային աշխատանքների պլաններն ու ստանձնած սոցպարտավորությունները։

Կուսակցական հանձնարարությունները ներկուսակցական աշխատանքի կարևոր բնագավառ են։ Այժմ շրջանի կոմունիստների 83 տոկոսն ունեն մշտական, իսկ մնացածները՝ ժամանակավոր հանձնարարություններ։ Հանձնարարությունների կատարման նկատմամբ հսկողությունը համարում ենք որպես նրանց գործնական ու քաղաքական պատրաստականության ստուգում։

Հանձնարարությունները բազմատեսակ են և բազմաթիվ։ Կոմունիստների մի զգալի մասը ներգրավված է կազմակերպությունների ընտրովի մարմիններում, ավելի քան 430 մարդ սկզբնական կազմակերպության քարտուղարներ են, կուսխմբերի կազմակերպիչներ, կուսկազմակերպիչներ, կոմիտեների ու բյուրոների և ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող կուսակցական հանձնաժողովների անդամներ։ Այսօր շրջանի 241 կոմունիստներ ժողովրդական դեպուտատներ են, 1.055-ը՝ ժողովրդական վերահսկողության, արհմիութենական և կոմերիտական ակտիվիստներ։

Կուսկազմակերպություններում կոմունիստներին հանձնարարությունները տրվում են բյուրոների նիստերում և կուսժողովներում։ Նրանք ներգրավվում են նաև ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվելիք հարցերը նախա-



պատրաստող հանձնաժողովներում, ուսումնասիրում այս կամ այն ետ մնացող բնագավառի գործերի վիճակը, պլանների կատարման, արտադրության ինտենսիվացման ընթացքը, առաջավոր փորձի տարածումը և արմատավորումը, խնայողության ռեժիմի կիրառումը և այլն։ Կարևոր նշանակություն ունի այն հանձնարարությունների կատարման ստուգումը, որն իրականացնում են կուսբյուրոներն ու նրանց քարտուղարները։

Կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներում ու ժողովներում պարբերաբար լսվում են նրանց հաշվետվությունները։ Այս առումով ուսանելի է Այրումի պահածոների գործարանի և Հաղթանակի սովխոզի կուսկազմակերպություններում կատարվող աշխատանքը։ Այստեղ համակողմանիորեն ուսումնասիրվում են ինքնահաշվետվությամբ հանդես եկող կոմունիստների գործունեության բոլոր կողմերը։ Օրինակ, Լավրենտի Առաքելյանի հաշվետվության քննարկման ժամանակ պարզվեց, որ թեև նա հաջողությամբ է կատարում օրվա առաջադրանքները և տրված հանձնարարությունները, սակայն, որպես կարգավորող-փականագործ, չի մտահոգվում իր մասնագիտական ունակությունների կատարելագործման, գիտելիքների խորացման մասին։ Այդ է պատճառը նաև, որ նրա սպասարկած արտադրամասում երկար ժամանակ անգործության էր մատնվել թիթեղյա տուփերի մեջ հյութի լցման մեքենան։ Ժողովից հետո Առաքելյանն ուսումնասիրեց մեքենայի անձնագիրը, դրա աշխատանքի մասին հրահանգն ու եղած գրականությունը։ Նրա աշխատանքի նկատմամբ վերահսկողությունը հանձնարարվեց գլխավոր մեխանիկ, կոմունիստ Շալիկո Միրզոյանին։ Մեկ ամսվա ընթացքում մեքենան կարգավորվեց և սկսեց նորմալ գործել։ Առաքելյանն սկսեց ուսումնասիրել արտադրամասում եղած բոլոր սարքավորումների վերաբերյալ հրահանգներն ու գրականությունը, ակտիվորեն մասնակցել գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերության աշխատանքին։

Կուսակցական ժողովը կոմունիստների դաստիարակության դպրոց է, հետևաբար և նրանց ակտիվության բարձրացման, նախաձեռնության զարգացման, կուսկազմակերպության մարտունակության ուժեղացման վճռական պայմանը։ Բարձր մակարդակով անցկացված ժողովում տնտեսական, սոցիալական ու քաղաքական-դաստիարակչական բնույթի հարցերը քննարկվում են գործարար մթնոլորտում, ընդհանրացվում են ուսանելին ու լավը, բացահայտվում թերություններն ու թերացումները։ Նման ձևով անցկացված ժողովը խոր հետք է թողնում կոմունիստի վրա, պահանջում նրանից ապրել կազմակերպությանը կոփվում, ձեռք է բեհուզող հոգսերով։ Այլ խոսքով, նա դաստիարակվում ու րում իր և ընկերների գործելակերպը ճիշտ, կուսակցականորեն գնահատելու հատկանիշներ։ Եվ այդ ամենը, անտարակույս, բարերար ներգործություն է ունենում կազմակերպության ակտիվության ու մարտունակության բարձրացման վրա։ Հաշվի առնելով այս հանգամանքները՝ մենք մեծ ուշադրություն ենք նվիրում կուսակցական ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը։ Դրանց մեծ կարևորություն են տալիս Ջեյթունի, Հաղթանակի, շրջկենտրոնի, Կողբի, Տավարշավանի սովխոզների, Այրումի պահածոների գործարանի կուսբյուրոները։

Գաղտնիք չէ, որ լավ նախապատրաստված ժողովում, երբ կոմունիստները քաջատեղյակ են քննարկվող հարցին, ցուցաբերում են մեծ ակտիվություն։ Կուսշրջկոմը, կազմակերպությունների բյուրոները ջանում են, որպեսզի բոլոր կոմունիստներն ակտիվորեն մասնակցեն հարցերի քննարկմանը, ծավալեն առողջ քննադատություն և ինքնաքննադատություն։

Կոմունիստներին կազմակերպության գործերով շահագրգռելու, նրանց ակտիվությունը բարձրացնելու նպատակով ամեն մի ժողովում հրապարակվում է հաջորդ ժողովի օրակարգը, հաստատվում քննարկվելիք հարցերը նախապատրաստող հանձնաժողովների կազմը։

Եվ մեկ կարևոր հանգամանք, որը նպաստում է կուսկազմակերպության մարտունակության ուժեղացմանը. ժողովում արված քննադատական դիտո-

մագումարից հետո անցած ժամանակաշրջանում շրջկոմի պլենումներում ու բյուրոյի նիստերում, կուսակցական ակտիվի ժողովներում քանիցս քննարկվել են սկզբնական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը վերաբերող մի շարք կարևոր հարցեր։ Առավել լավ արդյունք են տվել կադրերի հետ տարվող և գաղափարադաստիարակչական աշխատանքի կատարելագործմանը, կոմունիստների ավանգարդային դերի ապահովմանը, նրանց քննադատական դիտողությունների ու առաջարկությունների, կուսակցական հանձնարարությունների, վերադաս կուսակցական մարմինների ու սեփական որոշումների կատարմանը նվիրված հարցերի քննարկումները։ Շրջկոմի բյուրոյում գյուղի սոցիալական զարգացման խնդիրների լուծման գործում Կողբի տարածքում գտնվող կուսկազմակերպությունների (սովխոզ, անտառտնտեսություն, դպրոցներ) դերի բարձրացման վերաբերյալ հարցի քննարկումից հետո նրանք ավելի աշխուժացրին իրենց գործունեությունը՝ լուրջ ուշադրություն նվիրելով սոցիալական զարգացման խնդիրներին։ Նրանց միջամտությամբ անցած ժամանակաշրջանում գյուղում բարեկարգվել, ասֆալտապատվել, էլեկտրալուսավորությամբ ապահովվել են մի շարք նոր փողոցներ, լուծվել է խմելու ջրի հարցը, նորոգվել է մշակույթի տունը, հեռախոսային կապ է անցկացվել նոր թաղամասերում, ծավալվել է անհատական բնակարանային շինարարությունը, ամրապնդվել է դպրոցների և տեխնիկական ուսումնարանի նյութատեխնիկական բազան։ Քննադատության և ինքնաքննադատության զարգացման ասպարեզում Ջեյթունի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության կատարած աշխատանքի մասին հարցի քննարկումը արմատական բեկում մտցրեց այդ գործում։

Կուսկազմակերպության բարձր ակտիվության ու մարտունակության չափանիշ է ադմինիստրացայի գործունեության նկատմամբ նրա մշտական վերահսկողության հաջող իրականացումը։ Շրջանի կուսկազմակերպությունները ժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար լսում են տնտեսության արտադրական ճյուղերի ղեկավարների, մասնագետների հաշվետվությունները իրենց պաշտոնական պարտականությունների կատարման մասին, տալիս կոնկրետ հանձնարարականներ, ստուգում դրանց կատարումը։ Բաղանիսի սովխոզի կուսկազմակերպությունը վերջին երկու տարում ժողովներում քննարկել է տնտեսության դիրեկտորի, գլխավոր գյուղատնտեսի, անասնաբույժի հաշվետվությունները, բացահայտել նրանց սխալներն ու թերությունները, ուղղություն տվել նրանց գործունեությանը։ Կուսկազմակերպության առընթեր ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովն ուսումնասիրել է անասնապահական ֆերմայի, պարարտանյութերի օգտագործման վիճակը և արդյունքները քննարկման դրել կուսբյուրոյի նիստում։ Այս ամենի շնորհիվ ընթացիկ հնգամյակի տարիներին սովխոզում կատարվել են զգալի դրական տեղաշարժեր. բարձրացել են անասունների մթերատվությունը, հեկտարի բերքատվությունը։ Զգալի գործ է արվել բնակչության կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու ասպարեզում։

Ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովներ են ստեղծվել և գործում են բոլոր տնտեսություններում, արտադրական ձեռնարկություններում, շինարարությունում։ Դրանց թիվն այժմ հասնում է 48-ի։ Ակտիվ աշխատանք են ծավալում նաև ջրհան կայանների վարչության, Այրումի պահածոների գործարանի, Հաղթանակի և Ջեյթունի սովխոզների հանձնաժողովները։

Մեզ մտահոգում է աշխատավորական կոլեկտիվների ու բանվորական կադրերի արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվության զարգացման ասպարեզում կուսկազմակերպությունների դերի և հեղինակության բարձրացումը։ Այդ կարգի հարցեր ուսումնասիրել և շրջկոմի բյուրոյում քննարկել ենք Բաղանիսի, Դովեղի սովխոզների, Նորոգման շինտեղամասի սկզբնական կուսկազմակերպությունների վերաբերյալ։ Կարևորում ենք սկզբնական կազմակերպությունների ստորին օղակների աշխատանքի աշխուժացումը։ Շրջկոմի բյուրոյում գործարար մթնոլորտում ենք քննարկել, օրինակ, «Կողբի



սովխոզի արտադրական ստորաբաժանումների կուսխմբերի և բրիգադային կուսկազմակերպությունների գործունեությունը արտադրության վարման կուլտուրայի և արդյունավետության բարձրացման, աշխատանքի կազմակերպման ոճի ու մեթոդների կատարելագործման ասպարեզում» հարցը։ Այն բարերար ազդեցություն թողեց գործերի վիճակի և ընթացքի վրա։

Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը մեծապես նպաստում է նրանց հաշվետվությունների քննարկումը։ Վերջին տարիներին շրջկոմի բյուրոյում քննարկել ենք Ոսկեպարի, Հոկտեմբերի, Ոսկեվանի սովխոզների, Նոյեմբերյանի անտառտնտեսության, Բերդավանի դպրոցի կուսկազմակերպությունների հաշվետվությունները։ Իրենց գործունեության մասին բյուրոյին հաշիվ են տվել նաև Բերդավանի սովխոզի մեքենատրակտորային հավաքակայանի, Կողբի անտառպետության և Ոսկեպարի սովխոզի կաթնապրանքային ֆերմայի կուսխմբերը։ Առանձնահատուկ նշանակություն ունեցավ անցյալ տարվա սկզբին շրջկոմի պլենումում Նոյեմբերյանի սովխոզի և Այրումի պահածոների գործարանի սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվությունների քննարկումը ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում կատարած աշխատանքի մասին։ Պլենումից հետո, նրա առաջադրած խնդիրների լուծման շնորհիվ հսկայական դրական տեղաշարժեր են կատարվել այդ կազմակերպությունների կազմակերպական, գաղափարադաստիարակչական և քաղաքական-մասսայական աշխատանքներում։ Վկայությունը վերջնական արդյունքն է՝ նրանց ղեկավարած կոլեկտիվների արտադրական բարձր ցուցանիշները։

Շրջանի կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման գործում մեզ համար ծրագրային նշանակություն ունեցավ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1983 թ. օգոստոսի 16-ի որոշումը՝ «ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների լույսի ներքո սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման ասպարեզում ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի աշխատանքի մասին»։ Այդ որոշման կենսագործման խնդիրները քննարկել ենք շրջկոմի պլենումում, մշակել գործնական միջոցառումներ, հետևողական աշխատանք ենք տանում դրանց իրականացման համար։ Այդ ամենի շնորհիվ կուսկազմակերպությունները դարձել են ավելի ակտիվ ու մարտունակ, ուժեղացել է նրանց ազդեցությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, բարձրացել պատասխանատվությունը կոլեկտիվների գործերի վիճակի համար։ Դրանց կոնկրետ արտացոլումն այն հետևողական պայքարն է, որ շրջանի աշխատավորները մղում են ընթացիկ հնգամյակի առաջադրանքները կատարելու համար, ինչպես նաև այն շոշափելի արդյունքները, որոնք ձեռք են բերվել այդ պայքարում։

Հնգամյակի անցած տարիներին շրջանը հաջողությամբ է կատարել գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանային առաջադրանքները։ Բոլոր 16 սովխոզներն էլ տնտեսական տարին փակում են օգուտով, նրանք տնտեսապես ամրապնդվել և հաջողությամբ են կազմակերպում ընդլայնված վերարտադրությունը։ Պտղի արտադրության ու մթերումների բարձր ցուցանիշների համար շրջանն ընթացիկ հնգամյակում երկու անգամ արժանացել է ՀԿԿ Կենտկոմի Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին ու առաջին կարգի մրցանակին։ Այս տարի ևս մենք լուրջ հաջողություններ ենք ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետական մթերումների ավելացման ասպարեզում։

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներով՝ շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները ջանում են պատվով կատարել արտադրական կոլեկտիվների ավանգարդի և ղեկավարի իրենց դերը, դրսևորել բարձր ակտիվություն տնտեսական, սոցիալական ու քաղաքական կյանքի բոլոր ասպարեզներում։ Այդ գործում մեզ համար լուրջ ազդակ ու գործողության ուղեցույց է «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

---

# ՓԱՌՔԻ ԵՐԵՔ ԱՍՏԻՃԱՆԻ ՇՔԱՆՇԱՆՆԵՐԻ ԱՍՊԵՏԸ



ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ՝ «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին» որոշմամբ բարձր է գնահատվում կոմունիստ մարտիկների ու սպաների ներդրումը ֆաշիստական հրոսակների ջախջախման և պատերազմի հաղթական ավարտի գործում: «Կոմունիստները,— ասվում է որոշման մեջ,— գտնվում էին թշնամու դեմ մղվող պայքարի ամենածանր ու վճռական տեղամասերում: Նրանք անձնական օրինակով, կուսակցական կրքոտ խոսքով ոգեշնչում էին և հաղթանակի առաջնորդում սովետական մարդկանց»:

Սովետական ռազմիկների և հրամանատարների սխրագործություններն իրենց արտացոլումն են գտել Հայրենական մեծ պատերազմի տարիներին հրատարակված պարբերական մամուլում, գրականության մեջ, վառ մնացել մարդկանց հիշողություններում: Մեր բանակի հերոսամարտերի, նրա մարտիկների խիզախումների վավերագիր է նաև Թամանյան դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթը: Այն լույս էր ընծայվում արկերի ու ականների որոտի, գնդակների սուլոցի ներքո: Նրա էջերում զետեղվել են բազում հոդվածներ, թղթակցություններ ու ակնարկներ ֆաշիստական զավթիչների դեմ մղված կռիվներում կարմիրբանակայինների, հրամանատարների, քաղաշխատողների կատարած քաջագործությունների մասին: Եվ հաճախ, երբ հարկ է լինում վերհիշել թամանցիների սխրանքները, թերթում եմ «Կարմիր զինվորի» խունացած էջերը, վերստին հուզմունքով ընթերցում մարտադաշտի հերոսների մասին տպագրված նյութերը: Նրանցից մեկը Իսահակ Պողոսի Կարախանյանն է...

Տասնինը տարին բոլորած Իսահակը հանքահորից նոր էր դուրս եկել, երեսի քրտինքն ու փոշին դեռ չէր մաքրել, երբ նկատեց, որ մարդիկ սովորականի պես աշխույժ չեն, ինչ-որ թախծոտ է նրանց դեմքը: Ծատերը, ձեռքները կրծքներին ծալած, ռադիոբարձրախոսի շուրջը հավաքված, լսում են հերթական հաղորդումը: Նա մոտեցավ ծանոթներից մեկին ու հարցրեց.

— Ի՞նչ է պատահել:

— Պատերազմ է, պատերազմ: Հիտլերյան Գերմանիան հարձակվել է Սովետական Միության վրա,— լսվեց պատասխանը:

Իսահակն այլևս չշտապեց տուն, մնաց հավաքված մարդկանց մոտ, իր ականջով լսեց ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակման վերաբերյալ ռադիոյով կրկին հաղորդվող լուրը...



Հաջորդ օրը նա չգնաց հանք, այլ վաղ առավոտյան քայլերն ուղղեց դեպի զինվորական կոմիսարիատ: Հերթապահի պատասխանը հակիրճ էր.

— Երիտասարդ, մի՛ շտապեք, երբ կգա ձեր հերթը, կկանչենք:

Իսահակը շարունակեց իր գործը: Ինչպես շատերը, այնպես էլ նա հանքահորում աշխատում էր ութ-տասը ժամ, առանց հանգստյան օրերի: Եվ մի օր էլ հասավ նաև նրա զորակոչի հերթը:

...Արդեն վեցերորդ ամիսն էր՝ կատաղի կռիվներ էին սովետագերմանական ռազմաճակատում: Չնայած որ Մոսկվայի մատույցներում կարմիր բանակն անցել էր հակահարձակման և ռոտխին ետ էր մղում, ընդհանուր առմամբ երկրի վրա կախված սպառնալիքը տակավին չէր վերացել: Կոմունիստական կուսակցության կոչով կարմիր բանակի շարքերն էին համալրում հարյուր հազարավոր մարդիկ: Կազմավորվում էին նորանոր զորամիավորումներ, որոնցից մեկն էլ 89-րդ հրաձգային հայկական (հետագայում Թամանյան) դիվիզիան էր: Ծատերի հետ Իսահակ Կարախանյանն էլ դարձավ նրա զինվորը, նշանակում ստացավ 400-րդ հետևակային գունդը, որի հրամանատարն էր Սուքիաս Ասլանյանը, կոմիսարը՝ Սուրեն Բաղդասարյանը:

Կոմերիտական Ի. Կարախանյանն առաջին իսկ օրերից աչքի ընկավ իր բարձր ակտիվությամբ, և դա չվրիպեց հրամանատարության ուշադրությունից: Երբ ստեղծվեց գնդի՝ կրտսեր հրամանատարների պատրաստման դպրոց, նրան գործուղեցին այնտեղ սովորելու: Նա դպրոցն ավարտեց հաջողությամբ, նշանակվեց գնդի ականանետային գումարտակում ջոկի հրամանատար:

Քառասուներկուսի ամռանը կռիվները բորբոքվեցին Կուբանի հովտում: Ֆաշիստական իժերը սողում էին դեպի Կովկասյան լեռնաշղթան, ձգտում նրա վրայով անցնել Անդրկովկաս: Անդրկովկասյան ռազմաճակատի հրամանատարության կարգադրությամբ ռազմաճակատի այդ հատվածը փոխադրվեց նաև 89-րդ հրաձգային հայկական դիվիզիան: Այդ կապակցությամբ գնդերում, վաշտերում գումարվեցին կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների ժողովներ: Իրենց ստորաբաժանման ԼԿԵՄ ժողովում ունեցած ելույթում կոմերիտկազմակերպիչ Ի. Կարախանյանն ասաց.

— Հասել է վճռական պահը, և ես երդվում եմ արիությամբ կատարել իմ պարտքը հայրենիքի հանդեպ, կյանքս չխնայել նրա ազատության համար:

Դիվիզիայի ստորաբաժանումները պաշտպանական դիրքեր էին գրավել Թերեքյան լեռնաշղթայի կենտրոնական հատվածի հարավային լանջերում, Թերեք գետի աջ ափին: Այստեղ իր ականանետային հաշվարկի համար հարմար կրակադիրք էր ընտրել նաև սերժանտ Ի. Կարախանյանը: Ականանետների փողերն ուղղելով դեպի թշնամին՝ նա անհամբեր սպասում էր հրամանի:

Ականանետային գումարտակի հրամանատար, կապիտան Սիրակ Մանասյանը հանգիստ չէր նստում հրամանատարական կետում: Թշնամու արկերի ու ականների պայթյունների որոտի տակ նա դասակից դասակ, կրակակետից կրակակետ էր անցնում, իր բոլշևիկյան բոցաշունչ խոսքով քաջալերում կարմիրբանակայիններին: Ենթակաները սիրում ու հարգում էին իրենց խիզախ հրամանատարին, ճշտությամբ կատարում նրա կարգադրությունները ու խորհուրդները:

Սկսվեց դաժան գոտեմարտը: Հիտլերականները մեր դիրքերի վրա էին թափում անհաշիվ արկեր ու ականներ: Ի. Կարախանյանը, ականանետի մոտ կանգնած, ղեկավարում էր հաշվարկի զինվորների՝ Ասիր Մարտիրոսյանի, Հայկազ Ապրեսյանի, Արշակ Մնացականյանի գործողությունները: Նրանք իրենց ահեղ զենքից կրակ էին տեղում թշնամու վրա, քանդում հակառակորդի դիրքերը, լռեցնում նրանց կրակակետերը: Դա Իսահակի առաջին մարտական մկրտությունն էր: Առաջին իսկ մարտական գործողությունում դրսևորած քաջագործության համար նա արժանացավ հրամանատարության խրախուսանքին:

Ռազմաճակատի հրամանատարության հրամանով 89-րդ դիվիզիան առաջադրանք ստացավ շարժվել դեպի հյուսիս-արևմուտք՝ պաշտպանական նոր դիրքեր գրավել Մալգոբեկի մատույցներում: Թշնամին ուներ գերակշռող ուժ և ձգտում էր ինչ գնով էլ լինի ճեղքել 89-րդի պաշտպանության գոտին, խցկվել Գրոզնի, այնտեղից՝ Բաքու: Արյունալի էին նոյեմբերի 2-ին տեղի ունեցած մարտերը: Թշնամին ստացված թարմ ուժերով դիմեց գրոհի, այս անգամ դիվիզիայի պաշտպանության գոտու վրա՝ ընդհանուր ճակատով: Ամբողջ մարտադաշտը ծածկված էր հրկիզվող ականներից առաջացած հրդեհների ծխով, ռումբերի, արկերի պայթյունների փոշով: Կարախանյանի ականանետային հաշվարկի շուրջը պայթող արկերից ու ականներից ցնցվում

էր գետինը: Բայց կարմիրբանակայինները աներեր էին իրենց դիրքերում, նրանք անընդմեջ արկեր էին տեղում գրոհի անցած ֆաշիստների գլխին: Նոսրանում էին հիտլերականների շարքերը, լռում գնդացիրները: Այդ օրը նրա հաշվին գրանցվեցին հակառակորդի թիկունքից առաջին գիծը զինվորներ փոխադրող մեկ ավտոմեքենայի հրկիզում, մարդկային բազմաթիվ զոհեր:

Գրեթե երեք ամիս 89-րդ դիվիզիան, նրա շարքերում ականանետային ջոկի հրամանատար Ի. Կարախանյանը, արիաբար պաշտպանական կռիվներ է մղում Կովկասյան նախալեռներում: Մեր զորամասերն ամրոցի պես պատնեշ կանգնեցին հիտլերյան զավթիչների դեմ և թույլ չտվեցին առաջ շարժվելու: Նրանք արյունաքամ արեցին ֆաշիստական զորամասերը և իրենք անցան հակահարձակման՝ հակառակորդին հետապնդելով դեպի հյուսիսային Կովկասի խորքերը:

Քառասուներեք թվականի աշնանամուտն էր: Մեր դիվիզիան 18-րդ բանակի կազմում գործում էր Նովոռոսիյսկի մատույցներում: 400-րդ գնդի երկրորդ գումարտակին, որի կազմում էր Ի. Կարախանյանի ականանետային հաշվարկը, առաջադրանք էր տրվել՝ ճեղքել թշնամու պաշտպանական գիծը Սախարնայա գոլովկա բարձունքի լանջերին և ապա գրոհել ցեմենտի գործարանի վրա: Հարձակման առաջին իսկ պահին հակառակորդը դզոտներից սկսեց արճիճե կրակ թափել մեր հետևակային դասակների վրա՝ նպատակ ունենալով խափանել նրանց հարձակումը: Նկատելով այդ՝ Կարախանյանն ականանետի փողն ուղղեց դեպի առավել կատաղի գործող դզոտի կողմը և մեկ տասնյակ ական թափելով ֆաշիստների գլխին, լռեցրեց նրանց: Հետևակայինները, օգտվելով առիթից, գրոհեցին սարն ի վեր, ավտոմատային հերթազարկերով ու նռնակներով թշնամուն դուրս քշեցին իր դիրքերից: Կարախանյանի ականաձիգները, ականանետի մասերը շալակած, լեռնային դժվարին պայմաններում, հակառակորդի համար աննկատելի մի դիրքից մյուսն էին փոխադրվում, անմիջապես կարգի բերում ականանետը, դիպուկ կրակով հարվածում թշնամուն:

Սեպտեմբերի 16-ին ազատագրվեց Նովոռոսիյսկը: Սակայն հարձակումը շարունակվում էր դեպի Թամանյան թերակղզու խորքը: Ի. Կարախանյանն իր ականանետային հաշվարկով միշտ գրոհող հետևակայինների հետ էր և ապահովում էր նրանց առաջխաղացումը: Վերխնի Բականսկ բնակավայրի ազատագրման համար մղված կռվում նա վիրավորվեց: Բայց մարտի դաշտից դուրս չեկավ: Ընկերների օգնությամբ վերքը կապեց ու շարունակեց կատարել իր պարտականությունը: Թամանյան թերակղզու համար մղված մարտում ցուցաբերած խիզախության համար Ի. Կարախանյանի կրծքին շողշողաց առաջին կառավարական պարգևը՝ «Մարտական ծառայությունների համար» մեդալը:

Կարմիր բանակի զորամիավորումները, հետ գրավելով Կերչ թերակղզում, համառորեն մարտնչում էին Ղրիմի լիակատար ազատագրման համար: Հիտլերականները հաճախակի էին հարձակման անցնում, փորձելով մեր ստորաբաժանումներին ետ մղել իրենց գրաված դիրքերից: 1944-ի փետրվարի սկզբներին հիտլերականները, գրոհի անցնելով 400-րդ գնդի երկրորդ գումարտակի վրա, դըժվարին կացության մեջ գցեցին նրան: Հաշվի չառնելով իրենց կորուստները՝ նրանք սպանված զինվորների դիակների վրայով սողում էին առաջ: Կարախանյանը գործի դրեց իր ականանետն ու սկսեց մրրկային կրակ տեղալ հակառակորդի վրա: Վիրավորվեց ականներ մատուցող Ասիր Մարտիրոսյանը: Նրա պարտականությունը ևս իր վրա վերցրեց ջոկի հրամանատարը, որի շնորհիվ չդադարեց ականանետի կրակը: Թշնամին բռնեց ետ քաշվելու ճանապարհը: Միայն այդ մարտում Կարախանյանի ջոկը ոչնչացրեց հակառակորդի մի քանի ականանետ, գնդացրային մեկ կրակակետ, մի քանի տասնյակ հիտլերականների: Թշնամու դեմ մղված ահեղ ճակատամարտերում ցուցաբերած արիության համար նա դիվիզիայում առաջիններից մեկն էր, որ պարգևատրվեց Փառքի երրորդ աստիճանի շքանշանով: Այդ առթիվ պոետ-մարտիկ Արշալույս Սարոյանը «Խիզախություն և սեր» վերնագրով ակնարկ գրեց «Կարմիր զինվորում»:

Ղրիմի լիակատար ազատագրման համար բախտորոշ եղավ Սևաստոպոլյան ճակատամարտը, որին մասնակցում էր նաև 89-րդ հայկական Թամանյան դիվիզիան: Ընդհանուր հարձակումն սկսվեց մայիսի 7-ին: Թամանցիները գրոհում էին դեպի Գորնայա բարձունքը: Սովետական ահեղ զենքի հարվածների և ռազմիկների անձնվեր խիզախության առջև չդիմանալով՝ ֆաշիստները թողնում էին իրենց դիրքերն ու հենակետերը, նահանջում դեպի ծովի կողմը: Մայիսի 10-ին ազատագրվեց Սևաստոպոլը: Բայց թամանցիները շարունակեցին կռվել քաղաքի հարավ-արևմտյան կողմում մինչև մայիսի 12-ը: Այդ կռիվներում ավագ սերժանտ Ի. Կարախանյանն իր ականանետային հաշվարկով ցույց տվեց քաջության և արիության չգերազանցված օրինակ: Նա կրակի ու բոցերի միջով առաջ էր տանում իր ականանետը, հարմար դիրք գրավելով՝ քարուքանդ անում հակառակորդի արգելքները, ոչնչացնում կրակակետերը, ճանապարհ բացում հետևակի համար: Սևաստոպոլի համար մղված ճակատամարտի օրերին Կարախանյանի ջոկը ոչնչացրեց հակառակորդի ականանետային մեկ մարտկոց, երեք գնդացրային կրակակետ, տասնյակ զինվորներ: Մարտի դաշտում դրսևորած խիզախության և արիության համար ավագ սերժանտ Իսահակ Կարախանյանը պարգևատրվեց Փառքի երկրորդ աստիճանի շքանշանով:

Կոմունիստ Կարախանյանը գումարտակում, զորամասում ոչ միայն աչքի էր ընկնում իր քաջագործություններով, այլև ծավալած հասարակական-մասսայական ակտիվ աշխատանքով: Լինելով զինվորների հետ՝ նա լավ գիտեր նրանցից յուրաքանչյուրի տրամադրությունը, տեղյակ էր նրանց ապրումներին: Մարտական գործողությունների մասնակի դադարն օգտագործում և ռազմիկներին բացատրում էր կուսակցության քաղաքականությունը, նրանց համար կարդում թերթերում տպագրված կարևոր տեղեկությունները պատերազմական գործողությունների վերաբերյալ: Շուտով Կարախանյանը նշանակվեց երկրորդ գումարտակի կոմերիտական կազմակերպիչ: Բայց նա իրեն միշտ շարքային զինվոր էր համարում, միշտ, ավտոմատը ուսից կախած, կարմիրբանակայինների հետ:

...1945 թվական: Կարմիր բանակի զորագնդերը Սովետական Միության սահմաններից շատ հեռու ճզմում էին ոսոխին, նրան ստիպում սողալ դեպի իր որջը: Բելոռուսական առաջին ռազմաճակատի զորքերի կազմում 89-րդ հայկական Թամանյան դիվիզիան մարտնչում էր Բեռլինից 65 կիլոմետր դեպի արևելք, Օդեր գետի աջափնյա հենակետում: Ֆաշիստական զորախմբերն ամեն միջոց գործադրում էին՝ ետ մղելու այդ հենակետում ամուր դիրքեր գրաված թամանցիներին: Գումարտակի հրամանատար մայոր Հրանտ Սիմոնյանը, նրա քաղաքական գծով տեղակալ Հրաչյա Լալայանը հաճախ էին Կարախանյանին օգնության ուղարկում առաջին դիրքերում գտնվող կրակակետերի հաշվարկներին: Հակառակորդը, նոր ուժեր կենտրոնացնելով, ապրիլյան մի առավոտ անցավ հարձակման 89-րդի ստորաբաժանումների վրա: Թամանցիները փակել էին նրանց ճանապարհը: Սակայն ֆաշիստները, անցնելով հոգեբանական գրոհի, հաշվի չառնելով իրենց իսկ կորուստները, շարունակում էին առաջ շարժվել: Կոմերիտական Անատոլի Ռուդենկոն, թույլ տալով, որ նրանք մոտենան, այնուհետև ձեռքի գնդացրի հերթազարկերով ոչնչացրեց մեկ ջոկի չափ ֆաշիստների: Նա ծանր վիրավորվեց ահեղ մարտի ժամանակ: Ի. Կարախանյանն անմիջապես սլացավ դեպի վիրավորը, չոքեց նրա գնդացրի մոտ, սկսեց անվրեպ համազարկերով նոսրացնել թշնամու շարքերը: Երբ ճակատամարտը հանդարտվեց, նա կապեց ընկերոջ վերքը, դուրս բերեց առաջին գծից: Հիտլերականները ետ մղվեցին իրենց ելման դիրքերը:

Այդպես արիաբար թամանցիները պաշտպանեցին իրենց հենակետը: Հետո նրանք անցան հարձակման Բեռլինի ուղղությամբ: Մայիսի մեկին թամանցիներն արդեն մարտեր էին մղում քաղաքի կենտրոնական թաղամասերում: Կարախանյանն աներկյուղ մի փողոցից մյուսն էր անցնում ավտոմատի համազարկերով, թըշնամուն ստիպում վայր դնել զենքը: Մայիսի 2-ին ծնկի չոքեց Բեռլինը: Այդ օրը 89-րդ հրաձգային Թամանյան դիվիզիայի հրամանատար, գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանը հետևյալ զեկուցագիրն ուղարկեց կորպուսի հրամանատարին. «Հաղորդում եմ մեր վերցրած ռազմավարի և հակառակորդին հասցրած վընասների մասին: Վերցված է 5.000 գերի՝ զինվոր ու սպա: Ոչնչացված է տասը հակատանկային հրանոթ, երկու տանկ, 25 գնդացրային կրակակետ... Ռազմավար է վերցված երկաթուղային 8 էշելոն, 14 զենիթային հրանոթ, 151 գնդացիր, 600 ավտոմեքենա, 25.000 հրացան, 4 պահեստ՝ ռազմապաշարով ու սննդամթերքով...»:

Նկատի առնելով Օդերի հենակետում և Բեռլինի փողոցային մարտերում Ի. Կարախանյանի ցուցաբերած սխրանքները՝ դիվիզիայի հրամանատարությունը նրան ներկայացրեց Փառքի շքանշանով պարգևատրման: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1945 թվականի մայիսի 31-ի հրամանագրով նա արժանացավ Փառքի առաջին աստիճանի շքանշանի: Դա մեծ պարծանք էր ոչ միայն Ի. Կարախանյանի, այլև դիվիզիայի համար, որն իր շարքերում կոփել էր Փառքի երեք աստիճանի շքանշանների անժամանցած այդպիսի ութ քաջերի:

Սովետական Միության մարշալ Կ. Ռոկոսովսկին Փառքի երեք աստիճանի շքանշաններով պարգևատրվածների մասին ասել է. «Այդ ասպետներից յուրաքանչյուրը **երեք անգամ** կանգնել է մահվան շեմին, նորից կենդանություն առել, վերադարձել իր ստորաբաժանումը, կռվել ոխերիմ թշնամու դեմ»:

Երբ Հայրենական մեծ պատերազմն ավարտվեց, լեյտենանտ Ի. Կարախանյանի կրծքին, Փառքի երեք աստիճանի շքանշանների կողքին, շողշողում էին նաև Հայրենական պատերազմի առաջին ու երկրորդ աստիճանների շքանշաններ, բազմաթիվ մեդալներ: Երկար տարիներ իր գնդում ծառայելուց հետո նա ընտրվեց զորամասի կուսկազմակերպության պատասխանատու քարտուղար: Այնտեղից էլ զորացրվեց, անցավ խաղաղ ստեղծագործական աշխատանքի:

Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Հ. Ք. Բաղրամյանը, պաշտոնաթող գնդապետ Ի. Կարախանյանին հասցեագրած հակիրճ նամակում գրել է. «Հարգելի Իսահակ Պողոսի:

Իմ մարտական ընկերների անունից սրտագին շնորհակալություն եմ հայտնում ձեզ՝ ձեր ազնիվ գործունեության, մեր բազմազգ հայրենիքի քաջարի զինված ուժերի անվեհեր մարտիկների սխրանքները պրոպագանդելու համար»:

Պահեստի փոխգնդապետ Ի. Կարախանյանին հաճախ կարելի է տեսնել պիոներական ջոկատներում, պատանիների առջև ելույթ ունենալիս: Նա պատմում է մեծ Հայրենականում իրենց սխրանքներով աչքի ընկած ռազմիկների մասին, մատաղ սերնդին դաստիարակում հայրենասիրության, կոմունիստական կուսակցության գործին, նրա գաղափարներին հավատարմության ոգով:

**Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
«Կարմիր զինվոր» թերթի
նախկին խմբագիր

---



# ԲԺՇԿԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԴԵՈՆՏՈԼՈԳԻԱՅԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐԸ

**Ռ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ**
Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
**Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒ ՏԵԽՆԻԿԱՅԻ առաջընթացն էական ազդեցություն է գործել մեր կյանքի բոլոր բնագավառների, ինչպես և բժշկագիտության ճյուղերի վրա: Որակապես փոխվել է բուժական-ախտորոշման պրոցեսը, ստեղծվել են հիվանդությունների կանխարգելման նոր սկզբունքներ, ընդլայնվել է դեղամիջոցների, վիտամինների, կենսաբանական ակտիվ նյութերի տեսականին, երևան են եկել օրգանիզմի վերահսկման ու կենսապահովման նոր ավտոմատ ու ինքնակարգավորվող համակարգեր, հնարավոր են դարձել կենսականորեն կարևոր օրգանների փոխպատվաստումները, դրանց պրոթեզումը: Ժամանակակից ապարատների օգտագործումը հնարավորություն է ընձեռել ավելի խոր թափանցելու օրգանիզմում տեղի ունեցող ֆիզիոլոգիական և պաթոլոգիական պրոցեսների իմացության ոլորտը: Այս ամենը բարձրացնում է առողջապահության արդյունավետությունը, որակապես նոր պայմաններ ստեղծում մարդկային օրգանիզմի համակողմանի ճանաչման համար:

Սովետական բժշկագիտությունը, սոցիալիստական առողջապահությունը հասուն սոցիալիզմի պայմաններում հանդես են գալիս որպես մի իրական ուժ, որն ակտիվորեն ազդում է մարդու, հասարակության արտադրաուժերի առաջընթաց զարգացման վրա, բազմապատկում նրա նյութական արժեքները: Դրանք ավելի ու ավելի սերտորեն են հարաբերակցվում աշխատանքի ոլորտի հետ, նպաստում սոցիալիստական էկոնոմիկայի ինտենսիվացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, հանրային արտադրության արդյունավետության աճին:

Բնակչության առողջության ամրապնդման ու հիվանդությունների կանխարգելման, մայրության ու մանկության պահպանության, սովետական մարդկանց ակտիվ ստեղծագործ աշխատանքային երկարակեցության ապահովման հարցերը շարունակ գտնվում են կոմունիստական կուսակցության, սոցիալիստական պետության ուշադրության կենտրոնում, պետություն, որը յուրաքանչյուր քաղաքացու համար երաշխավորում է առողջության իրավունք: Այն հասարակությունը, որը ղեկավարում է «Ամեն ինչ մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար» ազնիվ նշանաբանով, չի կարող անտարբեր լինել իր անդամների առողջական վիճակի նկատմամբ: Մարդկանց մարմնական ու հոգևոր բարեկեցությունը նրանց լիարյուն ու ներդաշնակ գոյության առաջնահերթ պայմանն է, մարդկային անձնական երջանկության գրավականը:

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI համագումարի և կուսակցության Կենտկոմի հետագա պլենումների որոշումներով, առողջապահության աշխատողները հե-

տեղական աշխատանք են ծավալում բնակչության բժշկական սպասարկման
մակարդակն ու որակը բարձրացնելու նպատակով: Այս առումով կլինիցիստի
համար գործնական մեծ նշանակություն ունի դեոնտոլոգիայի հանգուցային
հարցերի մշակումը: «Դեոնտոլոգիա» տերմինն առաջինը գործածել է անգլիա-
ցի փիլիսոփա Բենտամը 1834 թվականին: Այն մի ուսմունք է, որն ուսումնա-
սիրում է պատշաճի (հունարեն «դեոն»՝ պատշաճ, «լոգոս»՝ ուսմունք) եղա-
նակներն ու մեթոդները, մարդու պրոֆեսիոնալ վարքագիծը, որոնց կիրառումն
ապահովում է լավագույն հաջողություններ՝ կանխանշված պրոֆեսիոնալ նը-
պատակին հասնելու գործում: Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը խիստ
քննադատության են ենթարկել Բենտամի՝ դեոնտոլոգիայի վերաբերյալ ան-
հատական եսասիրական օգտապաշտության հայացքները:

Հարկավոր է նշել, որ բժշկական բարոյագիտության և դեոնտոլոգիայի
պրոբլեմները մշակվել են դեռ հին աշխարհում այնպիսի ականավոր բժիշկ-
ների կողմից, ինչպիսիք էին Ակմենոնը, Հիպոկրատը, Գիլենը: Անտիկ բժշկու-
թյան մեջ արդեն ձևավորվել էր բարոյական պահանջների ու նորմերի մի ամ-
բողջ օրենսգիրք, որոնցով պետք է ղեկավարվեր բժիշկը: Հայաստանում դեռևս
XII դարում Մխիթար Հերացին գրել է մի շարք աշխատություններ բժշկական
բարոյագիտության պրոբլեմների վերաբերյալ: Համանման հարցեր շոշափել
է նաև Հերացու ժամանակակիցը, հայտնի փիլիսոփա Մխիթար Գոշը իր Դա-
տաստանագրքում: Բժշկական բարոյագիտության հարցերը XV դարում հան-
գամանորեն լուսաբանել է նաև Ամիրդովլաթը, որը նշանակալի դեր է կատա-
րել հայ բժշկության պատմության մեջ:

Սովետական սոցիալիստական առողջապահությունը դեոնտոլոգիան հա-
մարում է ուսմունք բժշկի վարքագծի մասին, որի նպատակն է առավելագույնս
բարձրացնել առաջատար միջոցառումների արդյունավետությունը, որոնք ու-
ղղված են ո՛չ միայն առանձին հիվանդների, այլև ողջ հասարակությանը:
Բժշկի այն ձեռնարկումները, որոնք առավելագույն չափով նպաստավոր են
մեկ հիվանդի համար՝ ի վնաս ուրիշ շատ հիվանդների, անընդունելի են սո-
վետական բժշկության համար: Ահա բժշկի պարտքի մասին ուսմունքի սկզբ-
բունքային տարբերությունը կապիտալիստական և սոցիալիստական հասարա-
կություններում, առողջապահության երկու սիստեմների դեոնտոլոգիայի միջև
եղած տարբերությունը: Սոցիալիստական հասարակության դեոնտոլոգիան
պետք է զարգանա ժամանակակից հոգեբանության, սոցիոլոգիայի, անհատի
տեսության, կառավարման տեսության, բարոյագիտության և հասարակական
ու բնական մի շարք այլ գիտությունների հետ, մարքս-լենինյան փիլիսոփա-
յության դիրքերի նվաճումների հետ սերտ կապակցված:

«Դեոնտոլոգիա» տերմինը սովետական բժշկական գրականության մեջ
երևացել է համեմատաբար վերջերս, սակայն դրա բովանդակությունը միշտ
եղել է հայրենական բժշկության առաջավոր ներկայացուցիչների քննարկման
առարկա: Սովետական բժիշկները, վերցնելով բժշկական դեոնտոլոգիայի բնա-
գավառում նախորդ սերունդների կուտակած ողջ լավագույնը, զգալիորեն ընդ-
լայնել ու խորացրել են այն՝ հենվելով սոցիալիստական հումանիզմի սկզբ-
բունքների վրա: Այս հարցերում հատկապես շատ բան են արել ՌՍՖՍՀ առող-
ջապահության առաջին ժողկոմ Ն. Ա. Սեմաշկոն, կլինիցիստներ՝ Ն. Ն. Բուր-
դենկոն, Ռ. Ա. Լուրիան, Մ. Ի. Աստվածատուրովը, Ի. Ա. Կասիրսկին և շատ
ուրիշներ: Ուշագրավ է Ա. Ֆ. Բիլիբինի փորձը դեոնտոլոգիական հարցերի շըր-
ջանակը սահմանելու, դրանց էությունը բնութագրելու խնդրում: Դեոնտոլոգիան
համարվում է բժշկական գիտության, բարոյագիտության, փիլիսոփայության,
հոգեբանության մի համաձուլվածք, որը կոչված է նպաստելու բուժման մե-
թոդաբանական հիմունքների խոր ըմբռնմանը: Բացահայտելով այդ ընդհանուր
բնորոշման բովանդակությունը՝ հեղինակը նշում է, որ դեոնտոլոգիան պետք
է բժշկի մեջ սերմանի բարոյական նորմեր (ոչ թե պարզապես ըստ «այսպես
արա» կանոնի), համակի մարդասիրությամբ, հիվանդի նկատմամբ սրտացա-
վությամբ, քաղաքացիականության և պատասխանատվության զգացումով, սո-
վորեցնի հանդես գալ որպես մտածող: Նպաստելով բժշկի աշխարհայացքի ձե-



վավորմանը՝ դեոնտոլոգիան դառնում է բուժման արվեստի վերարտադրման
հիմքը (տե՛ս А. Ф. Билибин. Деонтология и врачевание. Терапевтичес-
кий архив. 1981, № 1).

Ա. Ֆ. Բիլիբինի հոդվածը, որն ընդհանուր առմամբ հագեցած է հուզակա-
նությամբ և ընկալվում է որպես մի կրքոտ կոչ ի պաշտպանություն բժշկու-
թյան բարոյական էության, ջերմորեն ընդունվեց բոլոր նրանց կողմից, ովքեր
շահագրգռված են բժշկի աշխատանքի արդյունավետությամբ, նրա հեղինակու-
թյան բարձրացմամբ: Ավելի գիտական է թվում նույն հեղինակի այն պնդումը,
թե «բուժման մեջ անպայման պետք է առկա լինի փիլիսոփայական սկզբուն-
քը»: Եվ, իրոք, բժշկի աշխարհայացքի ձևավորումը մարքս-լենինյան փիլի-
սոփայության, մեր հասարակության գաղափարախոսության ֆունկցիան է:
Սույն հոդվածում ոչ բավարար հստակությամբ է բնորոշված «բուժման մեթո-
դաբանական հիմունքներ» արտահայտության իմաստը և այն, թե ինչու, այ-
նուամենայնիվ, հենց դեոնտոլոգիան է բուժման՝ որպես արվեստի «վերար-
տադրման հիմքը»: Եթե հոգեբանական և բարոյական մոմենտներն այդքան
կարևոր են բժշկի աշխատանքի համար և առավել ավարտուն ձևով երևան են
գալիս բուժման նպատակի մեջ, ապա ճիշտ կլինի դեոնտոլոգիան դիտել որպես
բժշկի կողմից իր դերի, պարտականությունների խոր գիտակցման կողմ: Իսկ
ինչ վերաբերում է բուժմանը, ապա դա, ինչպես հայտնի է, և՛ գիտելիք է, և՛
ըննում, և՛ գործիքներ, և՛ հիվանդության ախտանիշների բացահայտման մե-
թոդիկա, և՛ տեստեր, և՛ ախտորոշում...

Միաժամանակ կցանկանայինք նշել, որ սխալ կլիներ դեոնտոլոգիան որա-
կել սոսկ որպես բժշկական հոգեբանության մի ճյուղ կամ՝ վարվեցողության
սկզբունքների մի ամբողջություն և ոչ լիարժեք աշխատանքի հետևանքների
վերացում: Դեոնտոլոգիան բնորոշելիս պետք է նկատի առնվեն այն հարցերը.
որոնք ծառացած են բժշկական բարոյագիտության առջև: Մեր կարծիքով, այդ
հարցերի թվին կարելի էր դասել նաև այնպիսինները, ինչպես՝ հիվանդի բա-
րոյահոգեբանական առանձնահատկությունները, կլինիցիստի բարոյական գի-
տակցության հարաբերակցությունը կատարյալ բժշկի կերպարի («իդեալական
տիպի») հետ և վերջապես՝ բժշկի կողմից սոցիալիստական հասարակության
սոցիալ-քաղաքական արժույթների գնահատման հարցը:

Կլինիցիստի աշխատանքի շատ կողմեր աչքի են ընկնում բարոյահոգեբա-
նական գծերով: Այդ առավել ակնբախ է երևան գալիս ախտորոշման ժամա-
նակ, երբ կարևոր է հիվանդին վերաբերվել որպես սոցիալական էակի և, հե-
տևաբար, հաշվի առնել այն պրոցեսները, որոնք տեղի են ունենում ինչպես
ողջ հասարակության մեջ, նույնպես և պրոֆեսիոնալ այն միջավայրում, որին
պատկանում է նա: Յուրաքանչյուր հիվանդի մեջ անհատական, գուցե նույնիսկ
եզակի ձևով իր արտահայտությունն է գտնում սոցիալական գործոնների կար-
գավորիչ դերը՝ մարդու օրգանիզմում տեղի ունեցող կենսաբանական պրոցես-
ների համար: Ուստի միանգամայն ճիշտ կլինի հիվանդությունների պատճառ-
ները որոնել հիվանդի ապրելակերպի մեջ: Անկախ այն բանից, թե կլինի-
ցիստն ախտորոշելիս նախապատվությունը տալիս է օբյեկտի՞վ մոտեցմանը,
թե՞ հետևում է հակառակ կոնցեպցիային, նա այսպես թե այնպես հանգում է
կոնկրետ դեպքի անհատականացման: Ընդ որում կամա թե ակամա նա մոտե-
նում է հիվանդի ամբողջական զննման գաղափարին: Այդ դեպքում հիվանդի
կլինիկական հետազոտումը հանգում է ոչ թե հիվանդության դիագնոստիկա-
յին, այլ հիվանդի վիճակի ըմբռնման պրոբլեմին: Այստեղից և այն հետևու-
թյունը, որ ախտորոշման ժամանակ բժշկի վարքագիծը միշտ չէ, որ համա-
ձայնեցվում է դիագնոստիկայի տեսության այս կամ այն ուղղության կոն-
ցեպտուալ սխեմայի հետ, բայց դրա փոխարեն վարքագիծը կրում է բարո-
յագիտական բովանդակություն, դրական իմպուլսներ է ստանում նրանից:

Արժե հիշեցնել նաև այն, որ, ինչպես ցույց են տվել հաշվարկները, լա-
բորատորային տվյալներով դիագնոզը սահմանվում է հարյուրից 20 դեպքում,
կլինիկական հետազոտությունների հիման վրա՝ 30, իսկ բժշկի կաբինետում՝
50 դեպքում, ընդ որում մեքենական դիագնոստիկան տալիս է նույնպիսի

տվյալներ, ավելորդ անգամ հաստատելով հիվանդի հետ կլինիցիստ բժշկի
անմիջական հաղորդակցման անփոխարինելիությունը: Դա վկայում է, որ
դեոնտոլոգիան դեռ շատ անելիքներ ունի դիագնոստիկական խմացության
խորացման բնագավառում, օբյեկտ-սուբյեկտի հարաբերությունների յուրա-
հատկությունն ուսումնասիրելու ոլորտում:

Սոցիալիստական հասարակության մեջ կոմունիզմ կառուցող բժիշկ-քա-
ղաքացու բարոյական վեհ հատկանիշները զուգակցվում են բժշկական բարո-
յականության և բժշկական դեոնտոլոգիայի կանոնների ու նորմերի լայն,
աղատ կիրառման հետ, որոնք դիագնոստիկայի և հիվանդների բուժման բնա-
գավառում չեն սահմանափակվում լոկ նեղ պրոֆեսիոնալ խնդիրներով: Բժշկա-
կան բարոյագիտությունն ու դեոնտոլոգիան դառնում են ժողովրդի առողջու-
թյան պահպանության ու բարելավման հզոր միջոց, սովետական առողջապա-
հության առաջատար՝ պրոֆիլակտիկ ուղղության անհրաժեշտ մասը:

Սոցիալիստական քաղաքակրթվածությունը, որպես բազմակողմանի երև-
վույթ, ընդգրկում է նաև առողջության կուլտուրան: Չէ որ առողջությունը ոչ
այնքան բուժման արդյունք է, որքան խելացի, հիգիենիկ ապրելակերպի ար-
գասիք: Այսօր բացառիկ կենսական հարց է, որ յուրաքանչյուր սովետական
մարդ հասնի առողջ ապրելակերպի, կարողանա իր օրգանիզմը պահպանել
պատշաճ վիճակում: Եթե մարդիկ սիստեմատիկաբար պահպանեին հիմնական
հիգիենիկ պահանջները և հետևեին իրենց առողջությանը, կատարելով բժիշկ-
ների պատվերները, ապա դա անհամեմատ ավելի մեծ չափով կբարելավեր
բնակչության առողջական վիճակը, քան բժշկական գիտության ամենախոշոր
նվաճումները:

Հարկավոր է օգնել յուրաքանչյուր մարդու՝ գիտակցելու, որ վերաբեր-
մունքը սեփական առողջության նկատմամբ պարզապես նրա անձնական գոր-
ծը չէ, այն շոշափում է մեր ընդհանուր շահերը: Իրենց առողջությունը քա-
մահրող մարդիկ ավելի հաճախ են հիվանդանում, հաշմանդամ դառնում,
հիվանդության պատճառով ավելի շուտ են կենսաթոշակի անցնում: Իսկ անձ-
նական առողջության քայքայման համար վերջին հաշվով հատուցում է հասա-
րակությունը: Ուստի սովետական օրենսդրությունը նախատեսում է ո՛չ միայն
քաղաքացիների առողջության պահպանության իրավունք, այլև այն պահպա-
նելու պարտականություն: Սակայն բժիշկների ջանքերը, որոնք ուղղված են
բնակչության առողջության ամրապնդմանը, կարժեզրկվեն, եթե առողջության
պահպանության գործը հասարակության յուրաքանչյուր անդամի հոգացողու-
թյան առարկան չդառնա: Մեզ մոտ կան 70 միլիոն ծխողներ, բնակչության
մինչև 30 տոկոսն ունի ավելորդ քաշ: Դեպքեր են լինում, երբ մարդիկ հրա-
ժարվում են զննումներից, վակցինացումից, ֆիզկուլտուրային առողջարարա-
կան միջոցառումներից: Առանց իրենց առողջության պահպանմանն ուղղված
աշխատավորների գիտակցական ջանքերի, առողջապահության և սոցիալական
ապահովության վրա կատարվող ամենամեծ ծախսերն անգամ չեն կարող
ցանկալի արդյունք տալ:

«Բնակչության առողջության պահպանության բարելավման լրացուցիչ մի-
ջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշ-
մամբ առանձնահատուկ ուշադրություն է պահանջվում ժողովրդական տնտե-
սության բոլոր ճյուղերում, տերիտորիալ-արտադրական համալիրներում, ձեռ-
նարկություններում, հիմնարկություններում առողջարարական միջոցառում-
ների հեռանկարային պլանավորման հարցերի նկատմամբ: Վերջին տարինե-
րին շատ բան է արվել և արվում է մեր հանրապետությունում: Այդ մասին
նշվեց նաև «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպու-
թյունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատար-
ման ընթացի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: Խնդիր է դրված պոլի-
կլինիկաների, հիվանդանոցների, սանատորիաների, հանգստյան տների աշ-
խատանքում առավելագույն ուշադրությունը նվիրել պրոֆիլակտիկ միջոցա-
ռումներին: Այժմ բժշկությունը թևակոխում է զարգացման այնպիսի մի փուլ,
երբ դրա առավել հիմնական խնդիրն է դառնում մարդու առողջության կառա-



վարման օրենքների ուսումնասիրումը, դրանց գործնական տիրապետումը: Այդ
ամենը նախադրյալներ է ստեղծում պրոֆիլակտիկայի համակարգի լայն ար-
մատավորման համար, որում առավել լրիվ ու համապատասխանորեն բացա-
հայտվում են մեր առողջապահության մարդասիրական էությունը և սոցիա-
լական նշանակությունը:

Բժշկական բարոյագիտությունն ու դեոնտոլոգիան սերտորեն կապված են
սոցիալիստական հասարակության բժշկության խնդիրների ու սկզբունքների
և, ամենից առաջ, պրոֆիլակտիկ ուղղության հետ, հակառակ դեպքում դրանք
կդառնային բժշկական կանոնների սոսկ հավաքածու, իսկ բժշկի գործունեու-
թյունը սահմանափակված կլիներ դիագնոստիկայի ու հիվանդների բուժման
նեղ պրոֆեսիոնալ պարտականություններով:

Բժշկական հոգեբանության միջոցներն ու եղանակներն օգնում են անհա-
տական մոտեցում իրականացնելու հիվանդի նկատմամբ, հասնելու պրոֆի-
լակտիկայի ու բուժման առավել արդյունավետության, խուսափելու չմտած-
ված, հիվանդի հոգեկան աշխարհը խռովող անցանկալի ներգործություն հա-
րուցող գործողություններից, ամրապնդելու հիվանդի հավատը շուտափույթ
առողջացման նկատմամբ, բարձրացնելու նրա տրամադրությունը, ստեղծելու
կենսահաստատ տոնուս, նպաստելու բժշկական բարոյագիտության ու դեոն-
տոլոգիայի պահանջների իրականացման պայմանների ստեղծմանը:

Բժշկի պրոֆեսիան չունի որոշակի սահմանված աշխատաժամանակ, չի
սահմանափակվում արտադրության ու կենցաղի վարքագծի ձևական նորմերով:
Վիթխարի պատասխանատվություն դնելով իրեն բժշկությանը նվիրած մարդու
վրա, այն նրանից պահանջում է հոգևոր ու ֆիզիկական ուժերի կատարյալ
նվիրաբերում, բարձր ինտելեկտի առկայություն, անձնազոհություն և նվիր-
վածություն գործին, առանց որոնց հաջողությունն անհնար է մարդու կյանքի
ու առողջության համար մղվող պայքարում:

Հիշենք Հայրենական պատերազմի ահեղ տարիները, երբ բժիշկն ամենուր
էր. և՛ ռազմաճակատի բոլոր հատվածներում, և՛ պարտիզանական ջոկատնե-
րում, և՛ թիկունքի հոսպիտալներում ու հիվանդանոցներում: Այդ տարիներին
ամեն օր, ամեն ժամ հաստատվում էին Միխայիլ Իվանովիչ Կալինինի խոս-
քերը. «Բուժաշխատողները բանակի շարքերում նույնքան անհրաժեշտ են, որ-
քան զինվորներն ու հրամանատարները»: Կրակների տակ իսկ կատարելով
իրենց սրբազան պարտականությունը, մահվան ճիրաններից դուրս կորզելով
մարտիկներին, քաջի մահով, վիրահատական դանակը ձեռքներին զոհվել են
շատ ու շատ բժիշկներ: Հիշենք նրանցից Լ. Ադամյանին, Ռ. Բաղդասարյանին,
Ա. Գալոյանին, Լ. Գյանջյանին… Հայրենական պատերազմի դժվարին ճամ-
փաներով անցան, զինվորի կյանքի փրկության մաքառումներում սխրանքներ
գործեցին, իրենց կուրծքը հայրենիքի բարձր պարգևներով զարդարեցին բա-
զում բժիշկներ, որոնք, չնայած առաջացած տարիքին, մինչև օրս էլ շարունա-
կում են ազնվորեն ծառայել մարդու առողջության պահպանության ամենա-
մարդասիրական գործին: Նրանցից են բժշկական ծառայության փոխգնդապետ
Գ. Աբաջյանը, Ա. Ալեքսանդրյանը, գվարդիական բանակի ռազմաբժշկական
բաժնի պետ Գ. Մանուչարյանը և շատ շատերը:

Նրանց անկաշառ ու անձնվեր գործունեությունը օրինակ պիտի ծառայի
մարդու առողջության պահպանության նվիրական ասպարեզի գործիչների հա-
մար: Հանուն առողջապահության գործի կատարելագործման, երկարակեցու-
թյան ծավալած պայքարում նրանց զորավիգ կարող են լինել կյանքն ու ան-
ցած ճանապարհը բժշկության ոլորտի մեր այնպիսի բազմավաստակ երախտա-
վորների, ինչպիսիք էին՝ Հայկական ՍՍՀ ԳԱ, ՍՍՀՄ ԲԳԱ և բժշկապատմա-
բանների միջազգային ակադեմիայի իսկական անդամ, գիտության վաստա-
կավոր գործիչ, պրոֆեսոր Լևոն Հովհաննիսյանը, սովետահայ վիրաբուժության
դպրոցի հիմնադիրներից մեկը՝ ականավոր պրոֆեսոր Հարություն Միրզա-Ա-
վագյանը, ճանաչված ու սիրված պրոֆեսորներ Ռ. Գյանջեցյանը, Հ. Քեչեկը,
Գ. Արեշյանը, Ա. Մելիք-Ադամյանը, Մ. Շարիմանյանը և շատ ուրիշներ: Ո՞ւմ
մտքով կանցներ, որ բացի մարդու կյանքը փրկելուց, նրա սիրտը պահպանե-

լուց, համաճարակների դեմ անձնազոհ պայքարելուց ինչ-որ խոսելի մաքեր կարող էին լինել նրանց գլխում: Այդ փառավոր սերնդի արժանավոր հաջորդներն այսօր ևս ազնվորեն ծառայում են բժշկական գիտության զարգացման, մարդու առողջության պահպանության նվիրական գործին: Նրանցից են՝ գիտության վաստակավոր գործիչներ ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ Ռ. Ստամբուլցյանը, դոկտոր, պրոֆեսորներ Ս. Գալստյանը, Ք. Փիրումովը, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Ա. Միդոյանը, դոկտոր, պրոֆեսորներ Ա. Մինասյանը, Ա. Միքայելյանը, Լենինականի № 2 հիվանդանոցի թերապևտիկ բաժանմունքի վարիչ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ելենա Ավետիսյանը, հանրապետական հիվանդանոցի գլխավոր բժշկի տեղակալ Քնարիկ Կարապետյանը, Ստեփանավանից՝ հանրապետության վաստակավոր բժշկուհի Տույա Գրիգորևան...

Հարկ է նկատել, սակայն, որ մեզ մոտ դեռևս բժշկի, բուժաշխատողի վսեմ անունը անվանարկում են առանձին անհատներ, որոնք տառապում են ընչաքաղցության ախտով: Մոռանալով տված երդումը, մոռանալով, որ իրոք շատ ծանր է Հիպոկրատի գլխարկը՝ նրանք ակնկալիքներ են ունենում հիվանդից, մի աչքը հիվանդին, մյուսը հիվանդի ձեռքին են պահում՝ կորցնելով բժշկի համար ամենաթանկ բանը՝ արժանապատվությունն ու հեղինակությունը:

Կենտրոնական ու տեղական մամուլը, հատկապես վերջին ժամանակներս, հասարակական կարծիք է ստեղծում նման բուժաշխատողների մասին, պահանջում բարոյական դատաստան տեսնել ամենամարդասիրական մասնագիտության վսեմ կոչումն արատավորողների հետ, պահանջելով չթուլացնել պայքարն այդ չարաբաստիկ հիվանդության դեմ, հետևողականորեն պրոպագանդել սովետական ապրելակերպի նորմերը, կոմունիստական բարոյականության սկզբունքները: Քաջ հայտնի է, որ բժիշկը բուժում է նաև խոսքով, վերաբերմունքով ու վարքագծով, իր անկաշառ խառնվածքով:

Բուժել ոչ թե հիվանդությունը, այլ հիվանդին— առողջապահության բնագավառի աշխատողների ուղենիշ նշանաբանն է այս: Հիվանդության պատմությունը ո՛չ միայն բժշկական մտածողության դպրոց է, այլև մի յուրատեսակ էտալոն, որով կարելի է դատել կլինիցիստի դիտողականության, նրա էրուդիցիայի և կուլտուրայի մասին: «Բժշկի աշխատանքը հենց նրանով է դժվարին,— գրել է Ս. Գիլյարևսկին,— որ յուրաքանչյուր հիվանդ մարդ, որը նման չէ մեկ ուրիշին, պահանջում է խիստ անհատական մոտեցում իր նկատմամբ: Այդ բարդության ըմբռնումն էլ հենց արտացոլվում է հիվանդության պատմության մեջ, որը ոչ թե գրոտվածք է, այլ մի դպրոց, որ ձևավորում է կլինիկական մտածողությունը»:

Սովետական բժիշկները, զարգացնելով հայրենական և արտասահմանյան բժշկության մարդասիրական ավանդույթները, անդուլ հոգում են բնակչության առողջության պահպանության մասին, դրսևորելով անձնվեր ու սրտացավ վերաբերմունք հիվանդի նկատմամբ: Մեր երկրում բժիշկները բուժօգնություն են ցույց տալիս միշտ, չնայած այն նշանակալի ծախսերին, որոնք կապված են, օրինակ, այն բանի հետ, որ մասնագետների բրիգադը ինքնաթիռով մեկնում է երկրի հեռավոր շրջանները, վերակենդանացման բաժանմունքները հագեցվում են նորագույն սարքավորումներով...

Մի հանգամանք ևս. կարելի է կազմել ռիսկի աստիճանների մի աղյուսակ՝ հաճախ պատահող յուրաքանչյուր վիրահատության դեպքում: Երբ ենթադրվում է, թե անհաջողությունների տոկոսը հավասար կլինի բարենպաստ ելքերի տոկոսին, կամ նույնիսկ կգերազանցի այն, հարկավոր է պարզ ու որոշակի այդ բանը բացատրել հիվանդին ու նրա մերձավոր ազգականներին: Բայց անպայման պատմել նաև հիվանդության ծանրության և վիրաբուժական բուժումից հրաժարվելու վտանգավորության մասին:

Բժշկության անվճարությունն ու հանրամատչելիությունը մեզ մոտ և սոցիալիստական ընկերակցության երկրներում, պրոֆիլակտիկ միջոցառումների վրա խարսխված առողջապահության կազմակերպումը կյանքի կոչեցին նոր տիպի բժշկին՝ սոցիալիստական շինարարության ակտիվ մասնակցին: Սոցիալիստական հասարակարգում բժշկի և հիվանդի հարաբերությունները հիմնված են փոխադարձ հարգանքի վրա: Մարդու առողջությունը սովետական բժշկի պրոֆեսիոնալ և անձնական ձգտումների միակ նպատակն է:

Հիվանդությունների նվազեցման բնագավառում կարևոր դեր են խաղում բուժական-առողջապահական միջոցառումները: Այդ կոմպլեքս պլանները ներառնում են հարցերի լայն շրջանակ, որոնք կոչված են պահպանելու մարդկանց առողջությունը: Այդ նպատակով ուսումնասիրվում են արտադրամասերում հիվանդացության, տրավմատիզմի պատճառները, անվտանգության տեխնիկայի վիճակը, տեխնոլոգիական պրոցեսներն ու աշխատանքի կազմակերպումը, մշակվում են արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման հանձնարարականներ, ուսումնասիրվում հասարակական սննդի, բուժպրոֆիլակտիկ զննումների կազմակերպման հարցերը:

Ընթացիկ հնգամյակում աշխատանքի պայմանների բարելավումն իրագործվում է՝ հաշվի առնելով ֆիզիոլոգիայի, հոգեբանության և աշխատանքի հիգիենայի մասնագետների առաջարկները: Դրանցում նախատեսվում են ո՛չ միայն աշխատանքի արտադրողականության բարձրացում, այլև արտադրական տրավմատիզմի ու պրոֆեսիոնալ հիվանդացության նվազեցում, հնարավորությունների ստեղծում ո՛չ միայն մարդկանց առողջության պահպանման, այլև աշխատանքային ռեսուրսների տնտեսման համար:

Սոցիալիստական առողջապահության բարոյահումանիստական իդեալների իրականացման օբյեկտիվ հիմքը կոմունիստական շինարարության ասպարեզում տնտեսական, սոցիալ-քաղաքական ու սոցիալ-հիգիենիկ նպատակների ու խնդիրների միասնությունն է: Սոցիալիզմի պայմաններում սոցիալ-տնտեսական ու գիտատեխնիկական առաջընթացը հետամուտ է ստեղծելու օպտիմալ նախադրյալներ մարդու համակողմանի զարգացման, նրա առողջության պահպանման համար:

Սովետական առողջապահությունն զգալի ազդեցություն է գործում կյանքի ամենատարբեր ոլորտների վրա, սկսած նյութական արտադրությունից, ներառյալ կուլտուրայի ու դաստիարակության բնագավառը: Օրինակ, առանց հաշվի առնելու մարդու նեյրոհոգեկան և անատոմաֆիզիոլոգիական առանձնահատկությունները, այժմ անհնար է ստեղծել բարձրարտադրողական տեխնիկա ու սարքավորում: Աշխատանքի, մարդկանց կենցաղի ու հանգստի կազմակերպման, քաղաքների ու բնակավայրերի կառուցման ու վերակառուցման նոր սկզբունքների ու մեթոդների մշակումը՝ համապատասխան արտադրական ու կլիմայական պայմաններին, մարդու վրա նոր նյութերի ու էներգիաների պաթոգեն ներազդման կանխարգելումը անհնար են առանց ժամանակակից բժշկագիտության ընձեռած հնարավորությունների:

Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի գիտական կազմակերպումը պետք է նպաստի աշխատանքի առավելագույն արտադրողականության՝ մարդու ֆիզիկական ու նյարդահոգեկան ուժերի նվազագույն ծախսմամբ, այսինքն՝ մեծապես պահպանելով նրա առողջությունը:

Սոցիալիստական հումանիզմի էությունը սահմանված է ՍՄԿԿ ծրագրում. մարդը մարդուն բարեկամ է, ընկեր ու եղբայր: Սովետական յուրաքանչյուր մարդու համար այդպիսի բարեկամ է բժիշկը, որն ազատ է եսասիրական հաշիվներից, իր կյանքը նվիրաբերել է ամենամարդասիրական ու ազնիվ գործին՝ մարդկանց կյանքը փրկելու, նրանց առողջությունը վերադարձնելու և պահպանելու գործին:

Ինչպես դիագնոստիկայի, այնպես էլ բուժման մյուս կարևոր ասպեկտների դեոնտոլոգիական իմաստավորումը ժամանակակից սովետական բժշկության հրամայական պահանջն է: Այն ունի իրականացման ռեալ բազա— կոմունիստական կուսակցության և սովետական պետության անդուլ հոգատարությունն է այդ բժշկական գիտության զարգացման, դրա կազմակերպման ու առողջապահության զարգացման նկատմամբ:

Անհրաժեշտ է ձգտել այն բանին, որ ուսանողական նստարանից իսկ դեոնտոլոգիան օրգանապես զուգակցվի սովետական առողջապահության մասնագետների համակողմանի պրոֆեսիոնալ պատրաստության հետ:

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻԱՅԻ ՊԱՆԾԱԼԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

ՀՐԱՏԱՐԱԿԻ ՎՐԱ է 1963 թ. լույս տեսած Հայաստանի պիոներիայի ծնունդը հուշագրության երկրորդ գիրքը՝ Նոր կյանքի հունով խորագրով: Այն կազմել է ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ Ս. Մ. Մանասյանը: Այս երկու հուշաժողովածուները սաեւ լրացնում են Հայաստանի պատկոմական կազմակերպության կենտրոնական խորհրդի նախագահ Արտավազդ Բզնունու Պիոներական շարժման ընկիզբը Հայաստանում մեծարժեք աշխատությունը:




* Նոր կյանքի հունով. «Հայաստան» հրատ., 1984 թ.։

Հուշագրքում ամփոփված հոդվածներն ու ակնարկները ջերմ անմիջականությամբ ներկայացնում են պիոներական կազմակերպության ծավալման՝ ռոմանտիկայով հագեցած առաջին փուլի ընթացքը: Գիրքն առանձնապես արժեքավորում են փառաբանված զորավարներ Հ. Բաղրամյանի, Ի. Իսակովի, Ս. Բուդյոննու, ակադեմիկոս Հ. Օրբելու, ՀԿԿ Կենտկոմի այն տարիների քարտուղար Ա. Խանջյանի ողջույնի ջերմ, ուղեցույց խորհուրդներ պարունակող ուղերձները Հայաստանի պիոներներին:

Ժողովածուն բացվում է Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպությանն ուղղած ՍՄԿԿ Կենտկոմի ողջույնի խոսքով: Շնորհավորելով կազմակերպության փառապանծ տոնի՝ 60-ամյակի առթիվ, բարձր գնահատելով նրա ողջ գործունեությունը, ՍՄԿԿ Կենտկոմը պիոներիայի գլխավոր խնդիրն է համարում «...օգնել կուսակցությանը, կոմերիտմիությանը, դպրոցին՝ անեցնելու կոմունիստական իդեալների համար պայքարող գիտակից մարտիկներ, երեխաներին դաստիարակելու մեծ Լենինի կյանքի ու գործունեության օրինակով»:

1921 թվականի հուլիսին, տնտեսական ու կազմակերպական դժվարին պայմաններում ըստեղծվեց Հայաստանի պատկոմական կազմակերպությունը. հիմնադիրն էր կոմունիստ Ստեփան Մանուկյանը: Սովետական իշխանության հաղթանակով սկսվել էր դժվարին մի պայքար հին, նահապետական կյանքի վերափոխման համար: Այդ պայքարին անդամագրվեցին նաև պատանիներն ու աղջիկները: Շատ դժվարություններ էր հաղթահարում երիտասարդ հանրապետությունը: Քաղց, համաճարակ հիվանդություններ, գյուղական դպրոցների անմխիթար վիճակ...

Մեծ եղեռնից մազապուրծ շատ ընտանիքներ Արևմտյան Հայաստանի գավառներից գաղթեցին Խորհրդային Հայաստան: Գաղթի ճանապարհներին շատ զրկանքներ կրեցին հայ աշխատավորները, բայց երբ հասան վերածնված հայրենիք, կարծես գարնան արևից շունչ առած, մտան նոր կյանքի հորձանուտը: Այդ մասին չէ, որ իրենց հուշերում պատմում են Ադո Ադոյանը, Սիրակ Մանասյանը, Հրայր Իսաբեկյանը, Երվանդ Խալեյանը, Սերոբ Սարգըսյանը, Կոզմո Կոզմոյանը, Հակոբ Ստեփանյանը, Մուշեղ Մամիկոնյանը, Հակոբ Նալբանդյանը: Նրանց հուշերում չի վերակենդանանում այն մղձավանջը, որում անցել է նըրանց մանկությունը: Նրանք պատմում են, թե ինչպիսի՜ նվիրվածությամբ են մասնակցել սովետական կառավարության այն միջոցառումների կենսագործմանը, որոնց նպատակն էր նոր կարգերի ամրապնդումը, նոր դպրոցի հիմքերի արկանումը: Պատումներում կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ սովետական պետության լենինյան հոգատարությամբ ավելի ու ավելի էր առնականանում պիոներական կազմակերպությունը:

Պիոներական շարժման ծոցից ելան ու դաստիարակվեցին նրա ղեկավարները: Լինել պիոներական ղեկավար, նշանակում է լինել ուսման մեջ առաջավոր, հանձնարարված գործի իրականացման համար մղվող պայքարում նախաձեռնող, բոլորանվեր: Հուշագրքում շատ է հոլովվում Հայաստանի պատկոմական կազմակերպության հիմնադիր Ստեփան Մանուկյանի անունը. հեղինակները ջերմ խանդաղատանքով ու սիրով են հիշում նրան, երախտագիտությամբ անդրադառնում նրա գործերին: Հեղափոխական երիտասարդության այդ տաղանդավոր կազմակերպչի կյանքն ու գործունեությունը սույն հուշագրքի խմբագիր Ադո Ադոյանն արտացոլել էր առաջին գրքի **Հուրհրատող տաղանդ** ակնարկում: Սակայն նա զգում էր, որ այն ինչ-որ բանով պակաս է և այստեղ զետեղված **Մեր անմոռաց ռահվիրաները** ակնարկով նա ջանացել է լրացնել այդ: Չպետք է մոռանալ, որ «...վերածնության այգաբացին,— գրում է հեղինակը,— մեր հայրենիքը խիստ կարիք ուներ հասարակականքաղաքական կարող կազմակերպիչների, գրագետ ու կուլտուրական գործիչների, որոնք ի վիճակի լինեին դիմակայելու փլուզման եզրին հասած հայրենիքի թշվառ գոյապայմաններին»:

Հայաստանի պիոներիայի գաղափարական ղեկավարը ջանք չէր խնայում կոմերիտմիության III համագումարում Վ. Ի. Լենինի արտասանած ճառի ուղենիշ մտքերով լուսավորելու մատաղ սերնդի դաստիարակության ու կրթության, կոմունիզմի տեսության ու պրակտիկայի միաձուլման գործը:

Բնութագրելով կրակոտ ու կորովի Ստեփան Մանուկյանին՝ ակնարկագիրը շեշտել է, որ նա «...պատանեկան կոմունիստական շարժման համաստեղության փայլուն աստղերից մեկն էր, եթե ոչ գլխավորը։ Ի թիվս այլ արժանիքների, բնությունը նրան օժտել էր մի կարևոր հատկությամբ ևս՝ պատանիներին համախմբելու, նրանց ուղղակի հրապուրելու ունակությամբ: Ու եթե փորձենք բաղդատել նրա մըտավոր արժանիքները, ապա պետք է ասենք, որ նրա պայծառ խելքն ու դյութելու շնորհքն իրար հետ հանախ մրցում էին: Իր ողջ էությամբ նվիրված լենինյան վեհ գաղափարներին, այդ խանդավառ պատանին մի վառ աստղի նման այրվեց նոր կյանքի, մանավանդ նոր մարդու երկունքի բարդ ոլորտում: Այրվեց, բայց անմահացավ կոմունիստական կուսակցության հավատարիմ զինվոր Ստեփան Մանուկյանը... պատանեկան կոմունիստական շարժման տաղանդավոր կազմակերպիչն ու անբասիր ղեկավարը»:

Սիրով, ջերմությամբ է Ա. Ադոյանը ներկայացրել ո՛չ միայն Ստեփան Մանուկյանի, այլև նրա մարտական ընկերոջ՝ Արտավազդ Բզնունու կերպարը. իր ժամանակի բազմակողմանի զարգացած մարդկանցից էր նա, հրապուրված ժուռնալիստիկայով, արվեստով, գրականությամբ, փիլիսոփայությամբ: Դրա արտահայտությունն են Ա. Գերցենին և Ն. Չերնիշևսկուն նվիրված հոդվածները՝ գրված հասուն տարիներին: Լայն մտահորիզոնի, ստեղծագործական անուրանալի ձիրքի տեր, գերհամեստ գործիչը հասարակական աշխատանքի իր առաջին քայլերից մինչև կյանքի վերջը եղել է կոմունիստական կուսակցության վարած գաղափարամարտերի առաջամարտիկ, ինչպիսի պայմաններում էլ եղել է, միշտ հավատարիմ է մնացել մարքսիստ գաղափարականի, անբասիր մարդու կոչմանը: Իբրև կյանքի, իր գոյության բուն իմաստի չափանիշ, նա ընտրել էր սիրած գրողի՝ Ա. Չեխովի խորիմաստ խոսքերը. «Կյանքը մեզ տրվում է լոկ մի անգամ, և ցանկանում ես այն լինի իմաստալի, առույգ ու գեղեցիկ: Կամենում ես ինքնուրույն, ակնառու և ազնիվ դեր կատարել, ձգտում ես այնպես ընթանալ կյանքում, որ գալիք սերունդները կովան չունենան յուրաքանչյուրիս մասին ասելու՝ նա ոչնչություն էր կամ դրանից էլ վատ»:

Ստեփան Մանուկյանը, Արտավազդ Բզնունին և պիոներական շարժման մյուս ղեկավարները դաստիարակվել, առնականացել են հեղափոխական ռոմանտիկայով առլեցուն միջավայրում: Այդպիսի միջավայրի ծնունդն են նաև ներկա հուշագրքի քսան հեղինակները: Ահա և նրանցից մեկը՝ Սիրակ Մանասյանը, որ եղեռնից մազապուրծ, եկել, բնակություն է հաստատել Երևանում: Իր **Անմոռանալի հուշեր** ակնարկում նա նկարագրում է հրահանգ-

կենսագրական տեղեկանքներ մասը, որի միջոցով ընթերցողը համառոտակի տեղեկություններ է ստանում, այս արժեքավոր գրքի հեղինակների մասին: Այսօրվա մեր պիոներները շատ բան ունեն սովորելու մեր առաջին վզկապավորներից. նրանք պետք է զարգացնեն նվիրական ավանդույթները, դառնան անցյալի բոլորանվեր երախտավորների արժանի հետնորդներ; համակվեն նրանց ռոմանտիզմով, խանդավառ ոգևորությամբ:

Գրախոսվող հուշագիրքը ուղղակիորեն արձագանքում է մատաղ սերնդի դաստիարակության հուզող հարցերին: **Նոր կյանքի հունով** գիրքն ստեղծողների շնորհակալ այս աշխատանքը մի կուռ ատաղձ է պիոներիայի պատմության ստեղծման ճանապարհին:

Ուշագրավ այս ժողովածուն հարուստ է հիշարժան լուսանկարներով, որոնք պատրաստել է ճանաչված նկարիչ Նեմրութ Բաղդասարյանը: Ճաշակով, պոլիգրաֆիական վարպետությամբ հրատարակված այս գիրքը օգտակար շատ նյութ կարող է տալ պիոներական աշխատողներին, մանկավարժներին:

«Պիոներիային դաստիարակող կոմերիտականները ու մանկավարժները,— կարդում ենք **Վաթսուն վերընթաց տարիներ** խմբագրականում,— իրենց ամենօրյա գործունեությամբ կոմունիզմի քաղաքացիներ են կոփում, որոնք, դառնալով սոցիալիստական հայրենիքի պատմական մեծ առաջընթացի մարտիկներ, զարգացած սոցիալիզմի պայմաններում, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի լենինյան սկզբունքները վերածում են անձնական համոզմունքի՝ ո՛չ միայն բազում գիտելիքներով, առօրյա լարված աշխատանքով, այլև սոցիալիստական ապրելակերպի կենդանի օրինակով, սովետական երեկվա և այսօրվա հազարավոր հերոսների սխրանքներով ու քաջագործություններով»:

Գրքի նպատակը՝ գալիք սերունդներին դաստիարակել մեր երկրի երեկվա և այսօրվա երազող, ռոմանտիկ հերոսների սխրանքներով ու քաջագործություններով, նվիրական է, նման գրքերի անհրաժեշտությունը՝ անժխտելի:

**Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ**

*Խմբագրությունը նոր էր ստացել գրախոսականը, երբ մահը մեր շարքերից խլեց բազմամյա ժուռնալիստ Վազգեն Ամիրբեկյանին: Մեզնից հեռացավ մեր գրչակից ընկերը, ազնիվ ու շիտակ քաղաքացին: Նրա պայծառ հիշատակը միշտ վառ կմնա խմբագրության աշխատողների, հանրապետության լրագրողների սրտերում:*

# 1984 ԹՎԱԿԱՆԻՆ «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

№№ էջ



## ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ



## ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ





## ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ



## ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 19.11.84 թ.: Ստորագրված է տպագրության 13.12.84 թ.: ՎՖ 04729: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16032: Պատվեր՝ 2283:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.